Պրոլետարներ բոլոր երկրների, միացե՛ք



# ԼԵՆԻՆՅԱՆ ՈՒՂԻՈՎ

4
ԱՊՐԻԼ
1986 Թ.

ՀԱՅԱՍՏԱՆԻ ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ԿՈՒՍԱԿՑՈՒԹՅԱՆ
ԿԵՆՏՐՈՆԱԿԱՆ ԿՈՄԻՏԵԻ
ՏԵՍԱԿԱՆ-ՔԱՂԱՔԱԿԱՆ ԱՄՍԱԳԻՐ

ԼՈՒՅՍ Է
ՏԵՍՆՈՒՄ
ԱՄԻՍԸ ՄԵԿ
ԱՆԳԱՄ
ՀԱՅԵՐԵՆ
ԵՎ
ՌՈՒՍԵՐԵՆ

Բովանդակություն



ՀԱՅԱՍՏԱՆԻ
ԿՈՄԿՈՒՍԻ
ԿԵՆՏԿՈՄԻ
ՀՐԱՏԱՐԱԿՉՈՒԹՅՈՒՆ

ԵՐԵՎԱՆ

**Խմբագրության հասցեն՝**

*375023, Երևան—23, Օրջոնիկիձեի պողոտա № 2*

**ՀԵՌԱԽՈՍՆԵՐ**

| | |
|---|---|
| գլխավոր խմբագիր | 52—89—93 |
| գլխավոր խմբագրի տեղակալ | 52—99—06 |
| պատասխանատու քարտուղար | 52—99—22 |
| պատասխանատու քարտուղարի տեղակալ | 56—59—93 |

**Բաժիններ**

| | |
|---|---|
| մարքս-լենինյան տեսության պրոպագանդայի | 52—05—58 |
| կուսակցական կյանք | 52—25—43 |
| սոցիալ-տնտեսական պրոբլեմների | 52—57—56 |
| գիտության և կուլտուրայի | 52—99—34 |
| խմբագրության վարիչ | 53—86—11 |
| գրական աշխատողներ | 52—66—77 |
| | 56—[illegible] |






Պրոլետարներ բոլոր երկրների, միացե՛ք

# ՍՈՎԵՏԱԿԱՆ ՄԻՈՒԹՅԱՆ ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ԿՈՒՍԱԿՑՈՒԹՅԱՆ ԾՐԱԳԻՐԸ

## Նոր խմբագրություն

### Ընդունված է ՍՄԿԿ XXVII համագումարի կողմից

## ՆԵՐԱԾՈՒԹՅՈՒՆ

Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ հեղափոխության շնորհիվ ծնված սովետական երկիրը մեծ ու փառավոր ուղի է անցել: Կոմունիստական կուսակցության ղեկավարությամբ նվաճվել են համաշխարհային պատմական հաղթանակներ: Հետևողականորեն արտահայտելով բանվոր դասակարգի, բոլոր աշխատավորների շահերը, զինված մարքս-լենինյան ուսմունքով, հեղափոխական պայքարի ու սոցիալիստական շինարարության բազմահարուստ փորձով, ՍՄԿԿ-ն սովետական ժողովրդին վստահորեն առաջնորդում է կոմունիստական արարման ու խաղաղության կուրսով:

Կուսակցությունը քաղաքական ասպարեզ եկավ որպես հասարակության սոցիալիստական վերափոխման՝ կոմունիստների առաջին ծրագրային փաստաթղթի՝ «Կոմունիստական կուսակցության մանիֆեստի» մեջ հռչակված գաղափարների, Փարիզի կոմունայի հերոսների անմար սխրանքի, միջազգային բանվոր դասակարգի, Ռուսաստանի հեղափոխական-դեմոկրատական շարժման հեղափոխական ավանդույթների արժանավոր ժառանգորդ: Գիտական կոմունիզմի հիմնադիրներ Կարլ Մարքսը և Ֆրիդրիխ Էնգելսը, հենվելով դասակարգային պայքարի պատմական փորձի, մարդկության առաջավոր մտքի նվաճումների վրա, հայտնագործեցին հասարակական զարգացման օբյեկտիվ օրենքները, տեսականորեն ապացուցեցին կապիտալիզմի խորտակման անխուսափելիությունը, հիմնավորեցին պրոլետարիատի համաշխարհային պատմական առաքելությունը՝ որպես նոր, կոմունիստական հասարակության կերտողի: Նրանց «Պրոլետարներ բոլոր երկրների, միացե՛ք» բոցաշունչ կոչը այսօր էլ մնում է որպես բանվորական շարժման մարտական լոզունգը:

Մարքսի և Էնգելսի գործի հանճարեղ շարունակող Վլադիմիր Իլյիչ Լենինը պատմական նոր պայմաններում համակողմանիորեն զարգացրեց նրանց ուսմունքը, պատասխաններ տվեց արդիականության արմատական հարցերին, բանվորական շարժումը զինեց սոցիալիստական հեղափոխության ու սոցիալիստական շինարարության տեսությամբ, պատերազմի ու խաղաղության պրոբլեմներին վերաբերող հայացքների գիտական համակարգով:

Մարքսիզմ-լենինիզմը միասնական հեղափոխական ուսմունք է: Մեծ Լենինի ստեղծած կուսակցությունը դարձավ բանվորական շարժման հետ գիտական սոցիալիզմի միացման, տեսության ու պրակտիկայի անխզելի միասնության կենդանի մարմնավորումը: Կուսակցությունը եղել է, կա և կլինի մարքսիզմ-լենինիզմի կուսակցություն, հեղափոխական գործողության կուսակցություն:

Յուրաքանչյուր պատմական փուլում ՍՄԿԿ-ն լուծել է իր ծրագրերում գիտականորեն հիմնավորված խնդիրներ:

Առաջին ծրագիրն ընդունելով II համագումարում՝ 1903 թվականին, բոլշևիկյան կուսակցությունը Ռուսաստանի բանվոր դասակարգին, գյուղացիությանը, բոլոր աշխատավորներին պայքարի տարավ՝ տապալելու ցարական ինքնակալությունը, իսկ ապա՝ կապիտալիստական կարգերը, անցավ Ռուսաստանի երեք հեղափոխությունների բոցերի միջով: 1917 թվականի հոկտեմբերին բանվոր դասակարգը քաղաքական իշխանությունը վերցրեց իր ձեռքը: Պատմության մեջ առաջին անգամ առաջացավ բանվորների ու գյուղացիների պետություն: **Սկսվեց նոր աշխարհի արարումը:**

Երկրորդ ծրագիրն ընդունելով VIII համագումարում՝ 1919 թվականին, կուսակցությունը առաջադրեց սոցիալիզմի կառուցման խնդիրը: Ընթանալով չտրորված ուղիներով, հաղթահարելով անասելի դժվարություններ, դրսևորելով չտեսնված հերոսություն, սովետական ժողովուրդը կոմունիստական կուսակցության ղեկավարությամբ կենսագործեց Վ. Ի. Լենինի մշակած սոցիալիստական շինարարության պլանը: **Սոցիալիզմը մեր երկրում դարձավ իրողություն:**

Երրորդ ծրագիրն ընդունելով XXII համագումարում՝ 1961 թվականին, կուսակցությունը հսկայական աշխատանք ծավալեց կոմունիստական շինարարության բոլոր ուղղություններում: Սովետական հասարակությունը մեծ հաջողությունների հասավ արտադրողական ուժերի, տնտեսական ու սոցիալական հարաբերությունների, սոցիալիստական դեմոկրատիայի, մշակույթի զարգացման ասպարեզում, նոր մարդու ձևավորման գործում: **Երկիրը թևակոխեց զարգացած սոցիալիզմի փուլը:** Աճեց Սովետական Միության դերը՝ որպես ճնշման, ագրեսիայի և պատերազմի իմպերիալիստական քաղաքականության դեմ, խաղաղության, դեմոկրատիայի և սոցիալական առաջադիմության համար մղվող պայքարի հզոր գործոնի:

Երրորդ ծրագրի ընդունումից հետո անցած ժամանակը հաստատեց նրա տեսական ու քաղաքական գլխավոր հիմնադրույթների ճշտությունը: Դրա հետ մեկտեղ՝ կուտակված փորձը, երկրի ներքին կյանքում և համաշխարհային ասպարեզում կատարված փոփոխությունների գիտական իմաստավորումը հնարավորություն են ընձեռում ավելի ճշգրիտ և ավելի կոնկրետ սահմանել սովետական հասարակության զարգացման հեռանկարները, վերջնական նպատակին՝ կոմունիզմին հասնելու ուղիներն ու միջոցները, միջազգային քաղաքականության խնդիրները պատմական նոր պայմաններում:

**ՍՄԿԿ երրորդ ծրագիրը իր ներկա խմբագրությամբ սոցիալիզմի պլանաչափ ու համակողմանի կատարելագործման ծրագիրն է, երկրի սոցիալ-տնտեսական զարգացումն արագացնելու հիման վրա դեպի կոմունիզմ սովետական հասարակության հետագա առաջընթացի ծրագիրը: Դա հանուն խաղաղության ու սոցիալական առաջադիմության պայքարի ծրագիրն է:**

# ԱՌԱՋԻՆ ՄԱՍ

# ԿԱՊԻՏԱԼԻԶՄԻՑ ՍՈՑԻԱԼԻԶՄԻՆ ԵՎ ԿՈՄՈՒՆԻԶՄԻՆ ԱՆՑՈՒՄԸ ԱՐԴԻ ԴԱՐԱՇՐՋԱՆԻ ՀԻՄՆԱԿԱՆ ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆՆ Է

## I. Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ հեղափոխությունը և սոցիալիզմի կառուցումը ՍՍՀՄ-ում

Դեպի սոցիալիզմ մարդկության կատարած համաշխարհային պատմական շրջադարձը, որն սկսվեց Հոկտեմբերյան հեղափոխությամբ, հասարակական զարգացման օրինաչափ հետևանքն է:

Կապիտալիզմը մարդկության պատմության մեջ շահագործողական վերջին հա-



սարակարգն է: Հուժկու մղում տալով արտադրողական ուժերի զարգացմանը, նա այնուհետև խոչընդոտի վերածվեց սոցիալական առաջադիմության ճանապարհին:

Կապիտալիզմի պատմությունը դա նրա հիմնական հակասության՝ արտադրության հանրային բնույթի և յուրացման մասնավոր կապիտալիստական ձևի միջև եղած հակասության, բանվոր դասակարգի և բոլոր աշխատավորների շահագործման ուժեղացման, աշխատանքի ու կապիտալի, ճնշվածների ու ճնշողների միջև պայքարի սրման պատմություն է, դա աշխատավոր մարդկանց անհամար աղետներ բերող տնտեսական ճգնաժամերի, սոցիալ-քաղաքական ցնցումների, զավթողական պատերազմների ու կոնֆլիկտների պատմություն է:

Կապիտալի համակենտրոնացման ու կենտրոնացման պրոցեսը XX դարի սկզբին հանգեցրեց կապիտալիստների մոնոպոլիստական հզոր միությունների ստեղծման, որոնք զավթեցին տնտեսական ու քաղաքական ամբողջ կյանքի գլխավոր լծակները: Կապիտալիզմը թևակոխեց իր բարձրագույն և վերջին ստադիան՝ իմպերիալիզմի ստադիան: Վ. Ի. Լենինի արտահայտությամբ՝ «իմպերիալիստական կապիտալիզմը դարձավ ազգերի մեծագույն ճնշողը», ագրեսիվ պատերազմների հիմնական աղբյուրը:

Իմպերիալիզմի ստադիայում նյութական պայմաններ ստեղծվեցին կապիտալիստական արտադրական հարաբերությունները սոցիալիստականով փոխարինելու համար, հասունանում են հաղթական սոցիալիստական հեղափոխության օբյեկտիվ և սուբյեկտիվ նախադրյալները: **Հին հասարակության հեղափոխական վերափոխիչի և նորի կերտողի առաքելությունը պատմությունը դրել է բանվոր դասակարգի վրա:** Իրականացնելով այդ առաքելությունը, նա արտահայտում է ոչ միայն իր դասակարգային շահերը, այլև բոլոր աշխատավորների շահերը:

Ռուսաստանում իմպերիալիզմի հակասությունները, որոնք խորացել էին ցարիզմի գործադրած ճնշումով, ճորտատիրության մնացուկներով, դրսևորվեցին բացառիկ ուժով: Ռուսաստանը եղավ միջազգային իմպերիալիզմի առավել թույլ օղակը, նրա հակասությունների հանգուցակետը: Հենց այստեղ տեղափոխվեց համաշխարհային հեղափոխական շարժման կենտրոնը: Ռուսաստանի պրոլետարիատի առջև ծառացավ մի դժվարագույն և անչափ պատասխանատու խնդիր՝ առաջինը փշրել բուրժուազիայի համաշխարհային տիրապետության շղթան: Այդ բանը կարելի էր անել նոր տիպի կուսակցության՝ պրոլետարիատի մարտական հեղափոխական կազմակերպության ղեկավարությամբ միայն:

**Բոլշևիկյան կուսակցության կազմավորումը շրջադարձային կետ եղավ Ռուսաստանի և միջազգային բանվորական շարժման պատմության մեջ:** Դա եղավ հասարակական զարգացման օբյեկտիվ պահանջմունքի, պրոլետարիատի դասակարգային պայքարի արտահայտությունը, Վ. Ի. Լենինի, նրա շուրջը համախմբված մարքսիստների գիտական խորաթափանցության արգասիքը, նրանց քաղաքական ու կազմակերպչական անդուլ գործունեության արդյունքը: «Տվե՛ք մեզ հեղափոխականների կազմակերպություն, և մենք շուռ կտանք Ռուսաստանը» լենինյան կոչը ջերմ արձագանք գտավ բանվորների, Ռուսաստանի հասարակության առաջավոր մարդկանց, աշխատավոր ժողովրդի լավագույն ներկայացուցիչների մտքի ու սրտի մեջ: Վ. Ի. Լենինը մշակեց կուսակցության գաղափարախոսական, քաղաքական ու կազմակերպական սկզբունքները, մասսաների շրջանում նրա աշխատանքի մեթոդները: Նոր տիպի կուսակցությունն ստեղծվում և ամրապնդվում էր ռևիզիոնիզմի և աջ օպորտունիզմի, դոգմատիզմի և ձախ ավանտյուրիզմի դեմ մղվող անհաշտ մարտերում:

1905—1907 թվականների հեղափոխությունը՝ իմպերիալիզմի դարաշրջանի առաջին ժողովրդական հեղափոխությունը, ցուցադրեց բանվոր դասակարգի ուժը, եղավ պրոլետարիատի գալիք հաղթանակների նախերգանքը: 1917 թվականի փետրվարյան բուրժուադեմոկրատական հեղափոխությունը սրբեց-տարավ ցարիզմը: Բայց այդ հեղափոխությունը ժողովրդական զանգվածներին չազատեց սոցիալական ու ազգային ճնշումից, իմպերիալիստական պատերազմի բեռից, չլուծեց այն հակասությունները, որ բզկտում էին Ռուսաստանի հասարակությանը: Ժամանակի անվիճելի պահանջը դարձավ սոցիալիստական հեղափոխությունը:

Ռուսաստանի բանվոր դասակարգը աչքի ընկավ բարձր հեղափոխականությամբ և կազմակերպվածությամբ: Նրա գլուխ կանգնած էր քաղաքական մարտերում կոփված, առաջավոր հեղափոխական տեսությանը տիրապետող բոլշևիկյան կուսակ-

Սոցիալիզմի պատմական նվաճումը հանդիսացավ ռազմաստրատեգիական զուգակշռության հաստատումը ՍՍՀՄ-ի և ԱՄՆ-ի, Վարշավայի պայմանագրի կազմակերպության և ՆԱՏՕ-ի միջև: Այն ամրապնդեց ՍՍՀՄ-ի, սոցիալիզմի երկրների և բոլոր առաջադեմ ուժերի դիրքերը, ի դերև հանեց համաշխարհային միջուկային պատերազմում հաղթանակի հասնելու իմպերիալիզմի ագրեսիվ շրջանների հաշվարկները: Այդ հավասարակշռության պահպանումը խաղաղության և միջազգային անվտանգության ապահովման լուրջ գործոն է:

ՍՍՀՄ-ի, մյուս սոցիալիստական երկրների փորձը համոզիչ կերպով ցուցադրում է նոր հասարակության, որպես մարդկության առաջադիմության՝ կապիտալիզմին գերազանցող աստիճանի, սոցիալ-տնտեսական, քաղաքական, գաղափարական ու բարոյական անվիճելի առավելությունները, պատասխան տալիս հարցերի, որոնք ի վիճակի չեն լուծելու բուրժուական կարգերը:

Սոցիալիզմը մի հասարակություն է, որի դրոշին գրված է. «Ամեն ինչ հանուն մարդու, ամեն ինչ մարդու բարօրության համար»: Դա մի հասարակություն է, որտեղ՝

— արտադրության միջոցները ժողովրդի ձեռքում են, մեկընդմիշտ վերջ է տրված մարդու կողմից մարդու շահագործմանը, սոցիալական ճնշմանը, արտոնյալ փոքրամասնության իշխանությանը, միլիոնավոր մարդկանց աղքատությանն ու անգրագիտությանը.

— ամենալայն ասպարեզ է բացված արտադրողական ուժերի դինամիկ ու պլանաչափ զարգացման համար, գիտատեխնիկական առաջընթացն իր հետ բերում է ոչ թե գործազրկություն, այլ ամբողջ ժողովրդի բարեկեցության անշեղ բարձրացում.

— ապահովված է աշխատելու և «Յուրաքանչյուրից՝ ըստ իր ընդունակությունների, յուրաքանչյուրին՝ ըստ իր աշխատանքի» սկզբունքին համապատասխան դրա վարձատրման հավասար իրավունքը, բնակչությունն օգտվում է սոցիալական այնպիսի բարիքներից, ինչպիսիք են անվճար բուժսպասարկումը, լուսավորությունը, նվազագույն վարձով բնակարանը.

— հաստատվել է բանվոր դասակարգի, կոլտնտեսային գյուղացիության և մտավորականության անխախտ դաշինք, տղամարդիկ և կանայք ունեն հավասար իրավունքներ և դրանց իրականացման հավասար երաշխիքներ, երիտասարդ սերնդի առջև բաց է գալիք օրվա հուսալի ուղին, երաշխավորված է աշխատանքի վետերանների սոցիալական ապահովությունը.

— վերացված է ազգային անհավասարությունը, հաստատված են բոլոր ազգերի և ազգությունների փաստացի և իրավական հավասարություն, բարեկամություն ու եղբայրություն.

— հաստատվել և զարգանում է իսկական դեմոկրատիան՝ ժողովրդի համար և հենց իր՝ ժողովրդի կողմից իրագործվող իշխանությունը, ապահովված է քաղաքացիների լայն ու լիիրավ մասնակցությունն արտադրական, հասարակական ու պետական գործերի կառավարմանը.

— ազատության, մարդու իրավունքների, անհատի արժանապատվության գաղափարները հագեցված են իրական բովանդակությամբ, ապահովվում է իրավունքների և պարտականությունների միասնությունը, գործում են բարոյականության նույն օրենքներն ու նորմերը, նույն կարգապահությունը բոլորի և յուրաքանչյուրի համար, ավելի ու ավելի նպաստավոր պայմաններ են ստեղծվում անհատի բազմակողմանի զարգացման համար.

— տիրապետում է հիրավի մարդասիրական մարքս-լենինյան գաղափարախոսությունը, ժողովրդական զանգվածների առջև բաց են գիտելիքների բոլոր աղբյուրները, ստեղծված է սոցիալիստական առաջավոր մշակույթ, որը ներառում է ամենայն լավագույնը ընդհանուր համաշխարհային մշակույթից.

— հաստատվել է սոցիալական արդարության, կոլեկտիվիզմի և ընկերական փոխօգնության վրա հիմնված սոցիալիստական ապրելակերպ, որը աշխատավոր մարդուն վստահություն է տալիս ապագայի հանդեպ, նրան հոգեպես և բարոյապես վեհացնում որպես հասարակական նոր հարաբերություններ, սեփական ճակատագիրը կերտողի:

Սոցիալիզմը մի հասարակություն է, որի խոհերն ու գործողությունները միջազգային ասպարեզում նպատակամղված են ժողովուրդների անկախության ու սոցիա-



լական առաջադիմության ձգտման պաշտպանությանը, ենթարկված են գլխավոր խնդրին՝ խաղաղության պահպանմանն ու ամրապնդմանը:

Պատմական զարգացման նոր փուլում մեր կուսակցության, սովետական ժողովրդի առջև ամբողջ հասակով ծառանում է դեպի կոմունիզմ հետագա առաջընթացի նպատակով սոցիալիստական հասարակության համակողմանի կատարելագործման, նրա հնարավորությունների և առավելությունների ավելի լրիվ և արդյունավետ օգտագործման խնդիրը:

# II. Առաջադիմության և հետադիմության ուժերի պայքարն արդի աշխարհում

Մեծ Հոկտեմբերի սկզբնավորած սոցիալական ազատագրության համաշխարհային պատմական պրոցեսը գերմանական ֆաշիզմի և ճապոնական միլիտարիզմի ջախջախումից հետո Եվրոպայի, Ասիայի, իսկ այնուհետև նաև Ամերիկայի մի շարք երկրներում նշանավորվեց շահագործողների իշխանության տապալումով: **Սոցիալիզմը, որը սկզբնապես իրականություն էր դարձել մեր երկրում, վերածվեց համաշխարհային սիստեմի:** Միջազգային մասշտաբով պրակտիկայով ստուգված է նոր հասարակության կառուցման մարքս-լենինյան տեսությունը, սոցիալիզմը հաստատվել է երկրագնդի հսկայական տարածություններում, կոմունիստական քաղաքակրթության արարման ճանապարհով են գնում հարյուր միլիոնավոր մարդիկ: Հետզհետե նորանոր ժողովուրդներ են հրաժարվում կապիտալիզմին վստահելուց, չեն ցանկանում իրենց զարգացման հեռանկարները կապել նրա հետ, հաստատակամորեն փնտրում և գտնում են իրենց երկրների սոցիալիստական վերափոխման ուղիներ:

Սոցիալիզմի հաջողությունները առավել ևս տպավորիչ են, քանի որ դրանք ձեռք են բերվել պատմական ամենակարճ ժամկետներում, իմպերիալիզմի չդադարող ճնշման պայմաններում՝ տնտեսական բռնի ներգործումից ու գաղափարախոսական դիվերսիաներից մինչև հակահեղափոխական հեղաշրջումներ և ռազմական ագրեսիա կազմակերպելու ուղղակի փորձերը:

Սոցիալիստական երկրներում կուտակված փորձի նշանակությունն անանց է: Անցած տասնամյակները հարստացրին սոցիալիստական շինարարության պրակտիկան, ակնբախորեն ի հայտ բերեցին սոցիալիզմի աշխարհի բազմազանությունը: Միևնույն ժամանակ այդ տասնամյակների փորձը վկայում է **սոցիալիզմի ընդհանուր օրինաչափությունների** հսկայական նշանակությունը, ինչպիսիք են աշխատավորների իշխանությունը՝ բանվոր դասակարգի առաջատար դերով, հասարակության զարգացման ղեկավարումը գիտական սոցիալիզմի գաղափարախոսությամբ զինված կոմունիստական կուսակցության կողմից, արտադրության հիմնական միջոցների նկատմամբ հանրային սեփականության հաստատումը և այդ հիմքի վրա էկոնոմիկայի պլանաչափ աճը ի շահ ժողովրդի, «Յուրաքանչյուրից՝ ըստ իր ընդունակությունների, յուրաքանչյուրին՝ ըստ իր աշխատանքի» սկզբունքի իրագործումը, սոցիալիստական դեմոկրատիայի զարգացումը, բոլոր ազգերի և ազգությունների իրավահավասարությունն ու բարեկամությունը, դասակարգային թշնամիների ոտնձգություններից հեղափոխական նվաճումների պաշտպանությունը:

Սոցիալիստական երկրներից յուրաքանչյուրի կոնկրետ պայմաններում ընդհանուր օրինաչափությունների կիրառումը նրանց վստահ առաջընթացի, աճի դժվարությունների հաղթահարման և առաջացող հակասությունների ժամանակին լուծման հիմքն է, կառավարող կոմունիստական կուսակցությունների իրական ներդրումը սոցիալիստական զարգացման ընդհանուր պրոցեսում:

Սոցիալիզմը կյանքի է կոչել միջազգային հարաբերությունների նոր, աննախադեպ տիպ, որոնք զարգանում են սոցիալիստական պետությունների միջև: Դրանց ամրակուռ հիմքը սոցիալ-տնտեսական և քաղաքական կարգի միատարրությունն է, մարքս-լենինյան գաղափարախոսությունը, դասակարգային համերաշխությունը, բարեկամությունը, համագործակցությունն ու փոխօգնությունը նոր հասարակության կառուցման ու պաշտպանության խնդիրները լուծելիս, պայքարը հանուն խաղաղության, միջազգային անվտանգության և հասարակական առաջադիմության, իրավա-

ծնունդ է տվել մասսայական հանցագործությունների և տեռորիզմի, որոնք համակել են կապիտալիստական հասարակությանը: Հետզհետե ավելի կործանարար է դառնում մասսայական ինֆորմացիայի բուրժուական միջոցների դերը, որոնք թմրեցնում են մարդկանց գիտակցությունը հօգուտ տիրապետող դասակարգի:

**Խորանում է երկրների զարգացման անհամաչափությունը կապիտալիստական սիստեմի ներսում:** Գոյացել են միջիմպերիալիստական մրցակցության երեք առաջատար կենտրոններ՝ ԱՄՆ, Արևմտյան Եվրոպա, Ճապոնիա: Նրանց միջև ուժեղանում է մրցակցային պայքարը վաճառահանման շուկաների, կապիտալի ներդրման ոլորտների, հումքի աղբյուրների համար, գիտատեխնիկական առաջընթացի վճռական բնագավառներում գերազանցություն ունենալու համար: Գոյանում են մրցակցության տնտեսական ու քաղաքական նոր կենտրոններ, նախ և առաջ Խաղաղօվկիանոսյան ավազանում և Լատինական Ամերիկայում: Սրվում են հակասությունները բուրժուական պետությունների միջև: ԱՄՆ-ի մոնոպոլիաների կայսերապետական հավակնությունները ու շահադիտական քաղաքականությունը, եսամոլ նկատառումներից ելնելով ուրիշ, նույնիսկ իրենց դաշնակից պետությունների շահերն ու անվտանգությունը զոհաբերելու նրանց պատրաստակամությունը անող վրդովմունք ու տագնապ են առաջացնում աշխարհում:

Իմպերիալիզմն է պատասխանատվություն կրում կապիտալի ինդուստրիալ երկըրների և ազատագրված պետությունների մեծամասնության միջև տնտեսական զարգացման մակարդակների հսկայական ու խորացող խզման համար, երկրագնդի վրա սովի, աղքատության, համաճարակային հիվանդությունների ընդարձակ գոտիների պահպանման համար:

Պատմական զարգացման ընթացքը որքան ուժգին է խարխլում իմպերիալիզմի դիրքերը, այնքան ժողովուրդների շահերի նկատմամբ թշնամական է դառնում նրա առավել հետադիմական ուժերի քաղաքականությունը: Իմպերիալիզմը դաժան դիմադրություն է ցույց տալիս հասարակական առաջընթացին, փորձեր անում կանգնեցնելու պատմության ընթացքը, խարխլելու սոցիալիզմի դիրքերը, սոցիալական փոխվրեժ լուծելու համաշխարհային մասշտաբով: Իմպերիալիստական պետությունները ձգտում են կոորդինացնել իրենց տնտեսական, քաղաքական ու գաղափարախոսական ստրատեգիան, փորձում են պայքարի ընդհանուր ճակատ ստեղծել ընդդեմ սոցիալիզմի, ընդդեմ բոլոր հեղափոխական, ազատագրական շարժումների:

Իմպերիալիզմը չի ցանկանում հաշվի նստել արդի աշխարհի քաղաքական իրողությունների հետ: Անտեսելով սուվերեն ժողովուրդների կամքը, նա ձգտում է նրանց զրկել զարգացման ուղին ինքնուրույնաբար ընտրելու իրավունքից, սպառնում է նրանց անվտանգությանը: Սա է աշխարհի տարբեր շրջաններում կոնֆլիկտների առաջացման գլխավոր պատճառը:

Միջազգային ռեակցիայի միջնաբերդը ԱՄՆ-ի իմպերիալիզմն է: Նախ և առաջ հենց նրանից է բխում պատերազմի սպառնալիքը: Հավակնելով աշխարհակալության, նա ինքնակոչ կերպով ամբողջ մայրցամաքներ հայտարարում է իր «կենսական շահերի» գոտիներ: Նրա վարած հեգեմոնիզմի, թելադրանքի, մյուս պետություններին անիրավահավասար հարաբերությունների պարտադրման, հակաժողովրդական բռնացման վարչակարգերի պաշտպանության, ԱՄՆ-ին անցանկալի երկըրների նկատմամբ խտրականության քաղաքականությունը կազմալուծում է միջպետական տնտեսական ու քաղաքական հարաբերությունները, խոչընդոտում նրանց նորմալ զարգացումը:

Վիետնամի դեմ մղած արյունոտ պատերազմը, Կուբայի բազմամյա շրջափակումը, պաղեստինյան ժողովրդի օրինական իրավունքների ոտնահարումը, Լիբանանում ձեռնարկված ինտերվենցիան, անպաշտպան Գրենադայի զինված զավթումը, Նիկարագուայի դեմ ուղղված ագրեսիվ գործողությունները սոսկ մի քանիսն են այն անհամար չարագործություններից, որոնք մեկընդմիշտ կմնան որպես իմպերիալիզմի պատմության ամենախայտառակ էջեր:

Ժողովուրդների հանդեպ իմպերիալիզմի մեծագույն հանցագործությունը նրա սանձազերծած միջուկային և այլ սպառազինությունների՝ իր մասշտաբներով աննախադեպ մրցավազքն է: Դա չլսված շահույթներ է բերում մոնոպոլիաներին: Ռազմական վիթխարի ծախսերը ծանր բեռի պես ընկնում են աշխատավորների ուսերին: Զենք արտադրող մոնոպոլիաները, գեներալիտետը, պետական բյուրոկրատիան,



գաղափարախոսական ապարատը, ռազմականացված գիտությունը, միախառնվելով ռազմաարդյունաբերական համալիրի մեջ, դարձել են արկածախնդրության և ագրեսիայի քաղաքականության առավել մոլի իրագործողներն ու կազմակերպիչները: Մահվան ֆաբրիկատերերի և իմպերիալիստական պետական իշխանության չարագուշակ դաշինքը ծայրահեղ հետադիմության հենարանն է, պատերազմի վտանգի մշտական ու հարանուն աղբյուրը, կապիտալիստական սիստեմի քաղաքական ու սոցիալ-բարոյական սնանկության համոզիչ հաստատումը:

Արդի կապիտալիզմի ոչ մի «վերափոխում» և խուսավարում չեն վերացնում և չեն կարող վերացնել նրա զարգացման օրենքները, չեն կարող վերացնել աշխատանքի և կապիտալի, մոնոպոլիաների և հասարակության սուր հակամարտությունը, պատմականորեն դատապարտված կապիտալիստական սիստեմը դուրս բերել համընդգրկուն ճգնաժամի վիճակից: Զարգացման դիալեկտիկան այնպիսին է, որ այն նույն միջոցները, որոնք կապիտալիզմը գործի է դնում իր դիրքերն ամրապնդելու նպատակով, անխուսափելիորեն հանգեցնում են նրա բոլոր խորախոր հակասությունների սրման:

Իմպերիալիզմը պարազիտային, նեխող և մեռնող կապիտալիզմն է, սոցիալիստական հեղափոխության նախօրեն:

**Արդի դարաշրջանի հիմնական հեղափոխական դասակարգը եղել և մնում է բանվոր դասակարգը:** Կապիտալի աշխարհում նա է այն գլխավոր ուժը, որը պայքարում է շահագործողական կարգերի տապալման և նոր հասարակության կառուցման համար:

Կյանքը հաստատում է հասարակության մեջ բանվոր դասակարգի դերի բարձրացման մարքս-լենինյան դրույթը: Արտադրության մեջ գիտության հարանուն կիրառությունը նրա շարքերը համալրում է բարձրորակ աշխատանքի աշխատողներով: Դասակարգային մարտերի ընթացքում բանվոր դասակարգը համախմբվում է, ընդլայնում իր քաղաքական կուսակցությունները, արհմիութենական և այլ կազմակերպություններ, տնտեսական, քաղաքական ու գաղափարախոսական պայքար մղում կապիտալիզմի դեմ: Ընդլայնվում են մասշտաբները, այդ պայքարի ձևերը դառնում են ավելի բազմազան և հարստանում է նրա բովանդակությունը: Պրոլետարիատի արմատական շահերը հետզհետե ավելի հրամայական են դարձնում բանվորական շարժման, նրա բոլոր ջոկատների համերաշխ գործողությունների միասնության իրականացումը:

Դժվարին խնդիրներ են ծառացած Ասիայի, Աֆրիկայի, Լատինական Ամերիկայի երկրների երիտասարդ և արագ աճող բանվոր դասակարգի առջև: Նրան դիմակայում են ինչպես օտարերկրյա կապիտալը, այնպես էլ տեղական շահագործողները: Պայքարում աճում են նրա քաղաքական հասունությունը և կազմակերպվածությունը:

**Բանվորական շարժման, համաշխարհային հեղափոխական պրոցեսի բոլոր ուժերի ավանգարդը միջազգային կոմունիստական շարժումն է:** Կոմունիստները պայքարում են բանվոր դասակարգի ինչպես մերձակա, այնպես էլ հեռանկարային նպատակների համար, բոլոր աշխատավորների շահերի համար, հանուն սոցիալական առաջադիմության, ժողովուրդների ազգային ազատագրության, զինաթափման և խաղաղության: Կոմունիստական շարժումը հանդես է գալիս որպես արդիականության ամենաազդեցիկ գաղափարական ու քաղաքական ուժը:

Բանվոր դասակարգի հեղափոխական կուսակցությունները ղեկավարվում են հասարակական զարգացման գիտական տեսությամբ՝ մարքսիզմ-լենինիզմով, սկըզբունքային դասակարգային քաղաքականություն են վարում: Նրանք աչքի են ընկնում կապիտալիզմը սոցիալիզմով փոխարինելու պատմական անխուսափելիության համոզվածությամբ, սոցիալիստական հեղափոխության օբյեկտիվ օրինաչափությունների հստակ ըմբռնումով, ինչ ձևերով էլ որ այն իրականացվի՝ խաղաղ թե ոչ խաղաղ, սոցիալիզմի համար պայքարի ընդհանուր սկզբունքները յուրաքանչյուր երկրի կոնկրետ պայմաններում կիրառելու հմտությամբ:

Հեղափոխական կուսակցությունների ուժն այն է, որ նրանք հաստատակամորեն պաշտպանում են աշխատավոր ժողովրդի իրավունքներն ու կենսական ձգտումները, մատնանշում ճգնաժամային վիճակից բուրժուական հասարակության դուրս գալու ուղիները, առաջ քաշում շահագործողական կարգերի իրական այլընտրանք, սոցիալական լավատեսությամբ տոգորված պատասխաններ տալիս արդիականու-

Սուր հակասություններով հագեցված աշխարհում, սպառնացող աղետի դեմ-հանդիման կա միակ խելամիտ, միակ ընդունելի ելքը՝ **տարբեր հասարակարգերի պատկանող պետությունների խաղաղ գոյակցությունը:** Սա չի նշանակում սոսկ պատերազմների բացակայություն: Սա այնպիսի միջազգային կարգ է, որի դեպքում կտիրապետեր ոչ թե ռազմական ուժը, այլ բարիդրացիությունն ու համագործակցությունը, տեղի կունենար գիտության ու տեխնիկայի նվաճումների, մշակույթի արժեքների լայն փոխանակություն՝ հօգուտ բոլոր ժողովուրդների: Ռազմական կարիքների համար հսկայական ռեսուրսների ծախսումներից ազատվելը թույլ կտար աշխատանքի պտուղները օգտագործել բացառապես արարման նպատակով: Ինքնուրույն զարգացման ուղին բռնած պետությունները պաշտպանված կլինեին արտաքին ոտնձգություններից, որը կդյուրացներ նրանց շարժումը ազգային և սոցիալական վերելքի ուղիով: Նպաստավոր հնարավորություններ կբացվեին նաև բոլոր պետությունների կոլեկտիվ ջանքերով համընդհանուր պրոբլեմների լուծման համար: Խաղաղ գոյակցությունը համապատասխանում է բոլոր երկրների, բոլոր ժողովուրդների շահերին:

Երբեք այսքան ահարկու չի եղել մարդկության վրա կախված վտանգը: Բայց երբեք էլ այսքան ռեալ չեն եղել խաղաղության պահպանման ու ամրապնդման հնարավորությունները: Միավորելով իրենց ջանքերը, ժողովուրդները կարող են և պետք է վանեն միջուկային ոչնչացման սպառնալիքը:

Իմպերիալիզմի ագրեսիվ քաղաքականությանը դիմակայում է խաղաղության ուժերի աճող հզորությունը: Դա սոցիալիստական պետությունների ակտիվ, հետևողական խաղաղասիրական քաղաքականությունն է, նրանց ամրապնդվող տնտեսական ու պաշտպանական հզորությունը: Դա Ասիայի, Աֆրիկայի ու Լատինական Ամերիկայի պետությունների գերակշիռ մեծամասնության քաղաքականությունն է, որոնք կենսականորեն շահագրգռված են խաղաղության պահպանմամբ, սպառազինությունների մրցավազքի դադարեցմամբ: Դա բոլոր մայրցամաքներում ժողովրդական ամենալայն զանգվածների հակապատերազմական շարժումներն են, շարժումներ, որոնք դարձել են հասարակական կյանքի տևական և ազդեցիկ գործոնը:

Ուժերի ռեալ հարաբերակցության սթափ հաշվառումը հանգեցնում է նաև կապիտալիստական պետությունների պետական, քաղաքական շատ գործիչների կողմից սպառազինությունների մրցավազքի շարունակման և ընդլայնման վտանգավորության գիտակցմանը:

ՍՄԿԿ-ն ելնում է այն բանից, որ, որքան էլ մեծ լինի իմպերիալիզմի ագրեսիվ շրջանների քաղաքականության հետևանքով աշխարհին սպառնացող վտանգը, **համաշխարհային պատերազմի ճակատագրական անխուսափելիություն չկա: Պատերազմը կանխել, մարդկությանը աղետից փրկել կարելի է: Դա է սոցիալիզմի, մեր մոլորակի բոլոր առաջադեմ, խաղաղասեր ուժերի պատմական կոչումը:**

Համաշխարհային զարգացման ամբողջ ընթացքը հաստատում է արդի դարաշրջանի բնույթի ու հիմնական բովանդակության մարքս-լենինյան վերլուծությունը: **Դա կապիտալիզմից սոցիալիզմին ու կոմունիզմին անցման, համաշխարհային երկու սոցիալ-քաղաքական սիստեմների պատմական մրցության դարաշրջանն է, սոցիալիստական ու ազգային-ազատագրական հեղափոխությունների, գաղութատիրության կործանման դարաշրջանը, հասարակական զարգացման գլխավոր շարժիչ ուժերի՝ համաշխարհային սոցիալիզմի, բանվորական ու կոմունիստական շարժման, ազատագրված պետությունների ժողովուրդների, մասսայական դեմոկրատական շարժումների կողմից իմպերիալիզմի դեմ, ագրեսիայի ու ճնշման նրա քաղաքականության դեմ, խաղաղության, դեմոկրատիայի ու սոցիալական առաջադիմության համար մղվող պայքարի դարաշրջանը:**

Այդ ուժերի մշտական աճն ու նրանց փոխգործողությունը գրավականն են այն բանի, որ խաղաղ, ազատ ու երջանիկ ապրելու ժողովուրդների հույսերը կիրականանան: Ամբողջ անհամաչափությամբ, բարդությամբ ու հակասականությամբ հանդերձ մարդկության շարժումը դեպի սոցիալիզմ ու կոմունիզմ անկասելի է:



ԵՐԿՐՈՐԴ ՄԱՍ

# ՍՄԿԿ-Ի ԽՆԴԻՐՆԵՐԸ ՍՈՑԻԱԼԻԶՄԸ ԿԱՏԱՐԵԼԱԳՈՐԾԵԼՈՒ ԵՎ ԱՍՏԻՃԱՆԱԲԱՐ ԿՈՄՈՒՆԻԶՄԻՆ ԱՆՑՆԵԼՈՒ ԲՆԱԳԱՎԱՌՈՒՄ

## I. ՍՍՀՄ-ի կոմունիստական հեռանկարը և սոցիալ-տնտեսական զարգացման արագացման անհրաժեշտությունը

ՍՄԿԿ-ի վերջնական նպատակն է մեր երկրում կոմունիզմի կառուցումը: Սոցիալիզմը և կոմունիզմը միասնական կոմունիստական ֆորմացիայի երկու հաջորդական փուլերն են: Դրանց միջև խիստ սահմանագիծ չկա. սոցիալիզմի զարգացումը, նրա հնարավորությունների ու առավելությունների ավելի ու ավելի լիակատար բացահայտումն ու օգտագործումը, նրան ներհատուկ համակոմունիստական հիմունքների ամրապնդումն էլ հենց նշանակում են հասարակության իսկական առաջընթաց դեպի կոմունիզմ:

**Կոմունիզմը անդասակարգ հասարակարգ է՝ արտադրության միջոցների միասնական համաժողովրդական սեփականությամբ, հասարակության բոլոր անդամների լիակատար սոցիալական հավասարությամբ, որտեղ մարդկանց բազմակողմանի զարգացման հետ մեկտեղ կաճեն նաև արտադրողական ուժերը մշտապես զարգացող գիտության ու տեխնիկայի հիման վրա, հանրային հարստության բոլոր աղբյուրները կհորդեն լրիվ հոսանքով և կիրականանա «Յուրաքանչյուրից՝ ըստ իր ընդունակությունների, յուրաքանչյուրին՝ ըստ իր պահանջմունքների» վեհ սկզբունքը: Կոմունիզմը ազատ և գիտակից աշխատավորների բարձր կազմակերպված հասարակություն է, որտեղ կհաստատվի հանրային ինքնավարություն, հասարակության բարօրության օգտին աշխատանքը բոլորի համար կդառնա առաջին կենսական պահանջմունք, գիտակցված անհրաժեշտություն, յուրաքանչյուրի ընդունակությունները կգործադրվեն ժողովրդի համար առավել մեծ օգուտով:**

Կոմունիզմի նյութատեխնիկական բազան ենթադրում է այնպիսի արտադրողական ուժերի ստեղծում, որոնք հասարակության և անհատի խելամիտ պահանջմունքների լիակատար բավարարման հնարավորություններ են բացում: Կոմունիզմի պայմաններում ամբողջ արտադրական գործունեությունը կկառուցվի բարձրարդյունավետ տեխնիկական միջոցների ու տեխնոլոգիաների կիրառման վրա, կապահովվի մարդու և բնության ներդաշնակ փոխգործակցությունը:

Կոմունիստական ֆորմացիայի բարձրագույն փուլում լիովին կհաստատվի աշխատանքի և արտադրության անմիջականորեն հանրային բնույթը: Աշխատանքի հին բաժանման մնացուկների և դրանց հետ կապված էական սոցիալական տարբերությունների վերջնական հաղթահարման շնորհիվ կավարտվի սոցիալապես միատարր հասարակության ձևավորման պրոցեսը:

Կոմունիզմը նշանավորում է ժողովրդի սոցիալիստական ինքնավարության համակարգի, սոցիալիստական դեմոկրատիայի վերածումը հասարակության կազմակերպման բարձրագույն ձևի՝ կոմունիստական հանրային ինքնավարության: Սոցիալ-տնտեսական և գաղափարախոսական անհրաժեշտ նախադրյալների հասունացման, կառավարման մեջ բոլոր քաղաքացիների ներգրավման համեմատ, համապատասխան միջազգային պայմանների առկայության դեպքում, սոցիալիստական պետությունը, ինչպես նշում էր Վ. Ի. Լենինը, ավելի ու ավելի մեծ չափով կդառնա անցողիկ ձև «պետությունից՝ ոչ պետության»: Պետական մարմինների գործունեությունը կստա-







նա ոչ քաղաքական բնույթ, աստիճանաբար կվերանա պետության՝ որպես հատուկ քաղաքական հաստատության պահանջմունքը:

Կոմունիստական կացութաձևի անբաժանելի հատկանիշը հասարակության անդամների գիտակցականության, հասարակական ակտիվության, կարգապահության և ինքնակարգապահության բարձր մակարդակն է, որի դեպքում կոմունիստական համակեցության միասնական հանրաճանաչ կանոնների կիրառումը կվերածվի յուրաքանչյուր մարդու ներքին պահանջմունքի ու սովորության:

Կոմունիզմը հասարակարգ է, որտեղ յուրաքանչյուրի ազատ զարգացումը բոլորի ազատ զարգացման պայմանն է:

ՍՄԿԿ-ն նպատակ չի դնում կռահելու լիակատար կոմունիզմի հատկանիշները մանրամասներով: Դեպի կոմունիզմ առաջընթացի, կոմունիստական շինարարության փորձի կուտակման համեմատ նոր հասարակության բարձրագույն փուլի մասին գիտական պատկերացումները կհարստանան և կկոնկրետանան:

Սոցիալիզմի վերաճումը կոմունիզմի որոշվում է հասարակության զարգացման օբյեկտիվ օրենքներով, որոնց հետ հաշվի չնստել չի կարելի: Առաջ ընկնելու, առանց հասարակության նյութական ու հոգևոր հասունության մակարդակը հաշվի առնելու կոմունիստական սկզբունքներ մտցնելու բոլոր փորձերը, ինչպես ցույց է տալիս կյանքը, դատապարտված են անհաջողության, կարող են առաջ բերել ինչպես տնտեսական, այնպես էլ քաղաքական բնույթի կորուստներ:

Միաժամանակ ՍՄԿԿ-ն ելնում է այն բանից, որ չի կարելի դանդաղկոտություն թույլ տալ հասունացած վերափոխումների իրականացման, նոր խնդիրների լուծման գործում: Կուսակցությունը հաշվի է առնում, որ 70-ական թվականներին, 80-ական թվականների սկզբին երկրի զարգացման մեջ ձեռք բերված և անվիճելի հաջողությունների հետ մեկտեղ տեղ էին գտել որոշակի անբարենպաստ միտումներ և դժվարություններ: Դրանք զգալի չափով կապված են այն բանի հետ, որ ժամանակին և հարկ եղածին պես չգնահատվեցին տնտեսական իրավիճակի փոփոխությունները, կյանքի բոլոր ոլորտներում խոր տեղաշարժերի անհրաժեշտությունը, պատշաճ հաստատակամություն չէր դրսևորվում դրանց իրականացման գործում: Դա խանգարում էր սոցիալիստական կարգերի հնարավորությունների և առավելությունների ավելի լրիվ օգտագործմանը, դանդաղեցնում առաջընթացը:

ՍՄԿԿ-ն գտնում է, որ ժամանակակից ներքին ու միջազգային պայմաններում սովետական հասարակության բազմակողմանի առաջադիմությունը, դեպի կոմունիզմ նրա առաջընթաց շարժումը կարող են ու պետք է ապահովվեն **երկրի սոցիալ-տնտեսական զարգացման արագացման** միջոցով: Սա կուսակցության ստրատեգիական կուրսն է, որը նպատակամղված է սովետական հասարակության կյանքի բոլոր կողմերի որակական վերափոխմանը, գիտատեխնիկական հեղափոխության նվաճումների հիման վրա նրա նյութատեխնիկական բազայի արմատական նորացմանը, հասարակական հարաբերությունների և առաջին հերթին տնտեսական հարաբերությունների կատարելագործմանը, աշխատանքի բովանդակության և բնույթի, մարդկանց կյանքի նյութական ու հոգևոր պայմանների մեջ խոր վերափոխումների, քաղաքական, հասարակական և գաղափարախոսական հաստատությունների ամբողջ համակարգի ակտիվացմանը:

Նախատեսված խնդիրների հաջող լուծումը կուսակցությունը կապում է **մարդկային գործոնի դերի բարձրացման հետ:** Սոցիալիստական հասարակությունը չի կարող արդյունավետորեն գործել, չգտնելով կյանքի բոլոր ոլորտներում մասսաների ստեղծագործական գործունեության զարգացման նոր ուղիներ: Որքան մասշտաբային են պատմական նպատակները, այնքան կարևոր է տնտեսատիրոջ նման միլիոնավոր մարդկանց շահագրգիռ, պատասխանատու, գիտակից և ակտիվ մասնակցությունը դրանց իրագործմանը:

Սոցիալ-տնտեսական զարգացման արագացման հիման վրա սովետական հասարակությունը պետք է դուրս գա նոր բնագծեր, որ նշանավորում է.

**տնտեսական բնագավառում**՝ ժողովրդական տնտեսության բարձրացում գիտատեխնիկական և կազմակերպական տնտեսագիտական սկզբունքորեն նոր մակարդակի, նրա փոխադրում ինտենսիվ զարգացման ռելսերի, հանրային աշխատանքի արտադրողականությունը, արտադրանքի որակը և արտադրության արդյունավետությունը համաշխարհային բարձրագույն մակարդակին հասցնելը, երկրի միասնական



ժողովրդատնտեսական համալիրի օպտիմալ կառուցվածքի ու հաշվեկշռվածության ապահովում, աշխատանքի և արտադրության հանրայնացման մակարդակի զգալի բարձրացում, կոլտնտեսային-կոոպերատիվ սեփականության մերձեցում համաժողովրդականին՝ դրանց միաձուլման հեռանկարով հանդերձ.

**սոցիալական բնագավառում**՝ ժողովրդի բարեկեցության որակապես նոր մակարդակի ապահովում՝ հետևողականորեն իրականացնելով ըստ աշխատանքի բաշխման սոցիալիստական սկզբունքը, հասարակության հիմնականում անդասակարգ կառուցվածքի ստեղծում, քաղաքի և գյուղի միջև եղած սոցիալ-տնտեսական և կուլտուր-կենցաղային էական տարբերությունների վերացում, արտադրական գործունեության մեջ ֆիզիկական և մտավոր աշխատանքի ավելի ու ավելի օրգանական միավորում, սովետական ժողովրդի՝ որպես սոցիալական և ինտերնացիոնալ ընդհանրության հետագա համախմբում, մասսաների ստեղծագործական եռանդի ու նախաձեռնության բարձր մակարդակ.

**քաղաքական բնագավառում**՝ պետական և հասարակական գործերի կառավարման մեջ քաղաքացիների ավելի ու ավելի լրիվ ներգրավման, ընտրական սիստեմի կատարելագործման, ժողովրդական իշխանության ընտրովի մարմինների գործունեության բարելավման, արհմիությունների, կոմերիտմիության, աշխատավորների մյուս մասսայական կազմակերպությունների դերի բարձրացման, ներկայացուցչական և ուղղակի դեմոկրատիայի բոլոր ձևերի արդյունավետ օգտագործման միջոցով, ժողովրդի սոցիալիստական ինքնավարության ծավալում.

**հոգևոր կյանքի բնագավառում**՝ սովետական մարդկանց գիտակցության մեջ սոցիալիստական գաղափարախոսության հետագա ամրապնդում, սոցիալիզմի բարոյական սկզբունքների, կոլեկտիվիզմի և ընկերական փոխօգնության ոգու լիակատար հաստատում, բնակչության լայն մասսաներին գիտության նվաճումներին, մշակույթի արժեքներին հաղորդակից դարձնելը, բազմակողմանիորեն զարգացած անհատի ձևավորումը:

Այս վերափոխումների արդյունքը կլինի սովետական հասարակության որակապես նոր վիճակը, որը լիովին բացահայտում է սոցիալիզմի վիթխարի առավելությունները կյանքի բոլոր ոլորտներում: Դրանով իսկ պատմական առաջընթաց քայլ կարվի կոմունիզմի բարձրագույն փուլի ճանապարհին: Կուսակցությունը մշտապես կոմունիստական հեռանկարի հետ է հարաբերակցում իր քաղաքականությունը, տնտեսական ու սոցիալական ստրատեգիան, կազմակերպչական և գաղափարախոսական աշխատանքի խնդիրները:

## II. Կուսակցության տնտեսական ստրատեգիան

Երկրի սոցիալ-տնտեսական զարգացումն արագացնելու կուսակցության կողմից առաջադրվող խնդիրը խոր տեղաշարժեր է պահանջում նախ և առաջ մարդկային գործունեության վճռական ոլորտում՝ էկոնոմիկայում: Պետք է կտրուկ շրջադարձ կատարվի դեպի արտադրության ինտենսիվացում, յուրաքանչյուր ձեռնարկություն, յուրաքանչյուր ճյուղ վերակողմնորոշվի դեպի տնտեսական աճի որակական գործոնների լիակատար և առաջնահերթ օգտագործում: Պետք է ապահովվի անցումը բարձրագույն կազմակերպման և արդյունավետության էկոնոմիկային՝ բազմակողմանիորեն զարգացած արտադրողական ուժերով, արտադրական հարաբերություններով, լավ կարգավորված տնտեսական մեխանիզմով: Արդեն մինչև 2000 թվականը պետք է ձեռք բերվի երկրի արտադրական պոտենցիալի կրկնապատկում՝ դրա արմատական որակական նորացմամբ:

Այս խնդիրները կուսակցությունն ու ժողովուրդը լուծում են գիտատեխնիկական հեղափոխության հետագա խորացման պայմաններում, որը հզոր ազդեցություն է գործում ժամանակակից արտադրության բոլոր կողմերի, հասարակական հարաբերությունների ամբողջ համակարգի վրա, հենց մարդու և նրա կենսամիջավայրի վրա, աշխատանքի արտադրողականության զգալի բարձրացման և ամբողջությամբ վերց-

րած հասարակության առաջադիմության նոր հեռանկարներ է բացում: Սոցիալիզմի պատմական կոչումն է կոմունիստական շինարարությանը ի սպաս դնել առաջավոր գիտության նվաճումները, ամենակատարյալ ու ամենահզոր տեխնիկան, ստեղծարար կոլեկտիվ աշխատանքի հարահուն ուժը:

## Գիտատեխնիկական առաջադիմության արագացումը արտադրության արդյունավետության բարձրացման գլխավոր լծակն է

Կուսակցության տնտեսական ստրատեգիայի հիմնական հարցը գիտատեխնիկական առաջադիմության արմատական արագացումն է: Պետք է **իրականացվի ժողովրդական տնտեսության նոր տեխնիկական վերակառուցում** և այդ հիման վրա վերափոխվի հասարակության նյութատեխնիկական բազան:

Առաջնակարգ նշանակություն ունեն **արտադրական ապարատի արագ նորացումը առաջավոր տեխնիկայի,** առավել առաջադիմական տեխնոլոգիական պրոցեսների և ճկուն արտադրությունների **լայն ներդրման ուղիով,** որոնք թույլ են տալիս օպերատիվորեն վերակառուցվել նոր արտադրանքի թողարկման համար և առավել մեծ տնտեսական ու սոցիալական արդյունք են տալիս: Անհրաժեշտ է ավարտել կոմպլեքսային մեքենայացումը արտադրական և ոչ արտադրական ոլորտների բոլոր ճյուղերում, խոշոր քայլ անել արտադրության ավտոմատացման մեջ՝ անցնելով ավտոմատ արտադրամասերի ու ավտոմատ ձեռնարկությունների, ավտոմատացված կառավարման ու նախագծման համակարգերի: Ավելի ու ավելի լայն մասշտաբներով կանցկացվեն արտադրության էլեկտրիֆիկացում, քիմիացում, ռոբոտացում, կոմպյուտերացում, կկիրառվի կենսատեխնոլոգիա:

Կուսակցությունն ըստ ամենայնի կնպաստի երկրի **գիտատեխնիկական պոտենցիալի** հետագա մեծացմանը և արդյունավետ օգտագործմանը, էկոնոմիկայի ինտենսիվացման գործում խոշոր, հեղափոխական տեղաշարժերի նոր հնարավորություններ բացող գիտական հետազոտությունների ծավալմանը: Ամենուրեք պետք է ապահովվի գիտության ու տեխնիկայի նորագույն նվաճումների ներդրումը արտադրության, կառավարման մեջ, սպասարկման ու կենցաղի ոլորտում: Գիտությունը լրիվ չափով կդառնա անմիջական արտադրողական ուժ:

Գիտատեխնիկական առաջադիմության արագացման, տեխնիկայի ու տեխնոլոգիայի արմատական վերափոխումների, տեխնիկական, կազմակերպական, տնտեսական ու սոցիալական բոլոր գործոնների մոբիլիզացման հիման վրա պետք է ձեռք բերվի **աշխատանքի արտադրողականության** զգալի **բարձրացում,** առանց որի, ինչպես սովորեցրել է Վ. Ի. Լենինը, «անհնարին է վերջնական անցում կատարել դեպի կոմունիզմ»: Որպես աշխատանքի բարձրագույն արտադրողականության ճանապարհի կարևոր բնագիծ նախատեսվում է առաջիկա 15 տարում արտադրողականությունը բարձրացնել 2,3—2,5 անգամ:

Հարկավոր է յուրաքանչյուր միավորումում, յուրաքանչյուր ձեռնարկությունում և յուրաքանչյուր աշխատատեղում առավելագույնս օգտագործել աշխատանքի արտադրողականության աճի ռեզերվները: Անհրաժեշտ է ապահովել աշխատանքի աշխատատարության նվազեցումը, աշխատաժամանակի կորուստների կրճատումը, նորագույն տեխնիկայի և տեխնոլոգիայի ներդրումը, կարգուկանոնի և կարգապահության ամրապնդումը, նորմավորման կատարելագործումը, աշխատանքի գիտական կազմակերպման առաջադիմական ձևերի լայն կիրառումը, արտադրության կուլտուրայի բարձրացումը, աշխատավորական կոլեկտիվների կայունությունը, գյուտարարության և ռացիոնալիզացիայի զարգացումը:

Գիտատեխնիկական առաջադիմությունը պետք է նպատակամղված լինի **բնական ռեսուրսների, հումքի, նյութերի, վառելիքի ու էներգիայի օգտագործման** արմատական բարելավմանը բոլոր փուլերում՝ հումքի արդյունահանումից և կոմպլեքսային վերամշակումից մինչև վերջնական արտադրանքի թողարկում և օգտագործում: Անհրաժեշտ է արագացնել ազգային եկամտի նյութատարության, մետաղատարության և էներգատարության նվազեցման տեմպերը: Ռեսուրսատնտեսումը կդառնա վառելիքի, էներգիայի, հումքի և նյութերի հարցում ժողովրդական տնտեսության պահանջմունքների աճի բավարարման վճռական աղբյուրը:



Կուսակցության տնտեսական քաղաքականության և ամբողջ պրակտիկ աշխատանքի կենտրոն է մղվում **արտադրանքի տեխնիկական մակարդակի և որակի** ըստ ամենայնի **բարձրացման** խնդիրը: Սովետական արտադրանքը պետք է մարմնավորի գիտական մտքի վերջին նվաճումները, համապատասխանի տեխնիկատնտեսական, գեղագիտական և սպառողական մյուս ամենաբարձր պահանջներին, լինի մրցունակ համաշխարհային շուկայում: Անհրաժեշտ արտադրատեսակների հարցում երկրի պահանջմունքների և բազմապիսի ապրանքների հարցում բնակչության աճող պահանջարկի ավելի լրիվ բավարարման հուսալի ուղին որակի բարձրացումն է: Ցածր որակը, խոտանը նյութական ռեսուրսների և ժողովրդի աշխատանքի վատնում են: Կուսակցությունը ակտիվորեն կպաշտպանի պայքարը սովետական մակնիշի պատվի համար: Արտադրանքի որակը պետք է լինի մասնագիտական և հայրենասիրական հպարտության առարկա:

Գիտատեխնիկական առաջադիմության արդյունավետությունը կախված է ոչ միայն նորագույն տեխնիկայի թողարկման ավելացումից, այլև **հիմնական ֆոնդերի լավագույն օգտագործումից,** սարքավորումների յուրաքանչյուր միավորի, արտադրատարածքի յուրաքանչյուր քառակուսի մետրի հաշվով արտադրանքի ստացման ավելացումից: Պետք է հաղթահարել ֆոնդահատույցի նվազման տեղ գտած միտումը, իսկ հեռանկարային առումով հասնել այդ հատույցի բարձրացման:

Գիտատեխնիկական առաջադիմության արագացումը ավելի մեծ պահանջներ է ներկայացնում աշխատավորների ընդհանուր և մասնագիտական կրթությանը: Հետևողականորեն կանցկացվի կադրերի պատրաստման և որակավորման բարձրացման ամբողջ համակարգը կատարելագործելու, երկրի բոլոր ճյուղերում և ռեգիոններում աշխատատեղերի և աշխատանքային ռեսուրսների հաշվեկշռվածությունը պլանաչափորեն ապահովելու գիծ:

Գիտատեխնիկական առաջադիմության հիման վրա արտադրության համակողմանի ինտենսիվացման և ռացիոնալացման, դրա բարձրագույն արդյունավետության համար պայքարը տնտեսության պլանային սոցիալիստական սիստեմի պայմաններում օրգանապես միանում է սովետական հասարակության հումանիստական նպատակների իրականացման հետ, լիակատար զբաղվածության, մարդկանց կյանքի բոլոր կողմերի անշեղ բարելավման հետ:

## Հանրային արտադրության կառուցվածքային վերակառուցումը

Ինտենսիվացման ռելսերի անցնելը պահանջում է լուրջ **կառուցվածքային փոփոխություններ էկոնոմիկայում:** Ժողովրդական տնտեսությունը պետք է ճկունորեն և հասարակաժամանակին վերակառուցվի գիտության, տեխնիկայի և տեխնոլոգիայի, հասարակական և անհատական պահանջմունքների մեջ կատարվող առաջադիմական տեղաշարժերին համապատասխան: Անհրաժեշտ է ավելի արագ տեմպերով զարգացնել գիտատեխնիկական առաջադիմությունն ու սոցիալական խնդիրների հաջող լուծումն ապահովող ճյուղերը, հասնել սպառման և կուտակման օպտիմալ հարաբերակցության՝ արտադրության միջոցների և սպառման առարկաների արտադրության միջև, ագրոարդյունաբերական համալիրի ճյուղերի միջև համամասնությունների բարելավման: Կուժեղացվի էկոնոմիկայի սոցիալական կողմնորոշումը, հետևողականորեն շրջադարձ կիրականացվի դեպի սովետական ժողովրդի հարաճուն պահանջմունքների ավելի լրիվ բավարարում:

Այդ կապակցությամբ նոր պահանջներ են ներկայացվում **ինվեստիցիոն քաղաքականությանը:** Այն կոչված է ապահովելու կապիտալ ներդրումների արդյունավետության բարձրացումը, դրանց համակենտրոնացումը վճռական տեղամասերում, որոնցից կախված են ժողովրդատնտեսական բարձրագույն արդյունավետության արագ ձեռքբերումը և էկոնոմիկայի հաշվեկշռված զարգացումը, ծախսումների յու-

րաքանչյուր ռուբլու հաշվով արտադրանքի և ազգային եկամտի առավել մեծ հավելաճի ստացումը: Հարկավոր է ծանրության կենտրոնը նոր շինարարությունից տեղափոխել գործող ձեռնարկությունների տեխնիկական վերազինման և վերակառուցման վրա, զգալիորեն մեծացնել այդ նպատակներին հատկացվող միջոցների բաժինը արտադրական կապիտալ ներդրումների ընդհանուր ծավալում, դրանցում բարձրացնել սարքավորումների ու մեքենաների համար կատարվող ծախսումների տեսակարար կշիռը: Առաջնահերթ խնդիր է բարելավել կապիտալ ներդրումների հարաբերակցությունը ռեսուրսահայթայթիչ, վերամշակող և սպառող ճյուղերում, իրականացնել միջոցների վերաբաշխում գիտատեխնիկական առաջադիմության արագացումն ապահովող ճյուղերի օգտին:

ՍՍՀՄ էկոնոմիկան աշխարհում ամենակատարյալ և ամենահզոր էկոնոմիկայի վերածումը պահանջում է տնտեսական հզորության հիմքի՝ **ծանր ինդուստրիայի** հետագա զարգացում:

Կուսակցությունը գիտության ու տեխնիկայի նորագույն նվաճումների նյութականացման բնագավառում հիմնական դերը հատկացնում է **մեքենաշինությանը:** Մեքենաշինության աճի տեմպերի արագացումը ժողովրդական տնտեսության բոլոր ճյուղերում գիտատեխնիկական առաջադիմության և երկրի պաշտպանունակությունը պատշաճ մակարդակի վրա պահպանելու հիմքն է, հեռանկարային առումով տնտեսության զարգացման գլխավոր ուղղությունը: Մեքենաշինությունը կոչված է թողարկելու տեխնիկատնտեսական բարձրագույն մակարդակի մեքենաների, սարքավորումների ու սարքերի համակարգեր ու համալիրներ, որոնք ապահովեն հեղաշրջող փոփոխությունները արտադրության տեխնոլոգիայի ու կազմակերպման մեջ, աշխատանքի արտադրողականության բազմապատիկ բարձրացում, արտադրանքի նյութատարության և էներգատարության նվազեցում, դրա որակի բարելավում, ֆոնդահատույցի աճ: Առաջնային զարգացում կստանան հաստոցաշինությունը, էլեկտրատեխնիկական արդյունաբերությունը, միկրոէլեկտրոնիկան, հաշվողական տեխնիկան և սարքաշինությունը, ինֆորմատիկայի ամբողջ ինդուստրիան՝ գիտատեխնիկական առաջադիմության արագացման իսկական կատալիզատորները:

Անհրաժեշտ է ամրապնդել պոտենցիալը և որակական տեղաշարժ կատարել մետալուրգիայի, քիմիայի ասպարեզում և ծանր արդյունաբերության **կոնստրուկցիոն նյութեր** արտադրող մյուս ճյուղերում, մշտապես ընդլայնել տեսականին, բարելավել նյութերի որակը, ավելացնել դրանց նոր, առավել խնայողական ու առաջադիմական տեսակների թողարկումը:

Կարևորագույն խնդիր է **երկրի վառելիքաէներգետիկ համալիրի** արդյունավետ զարգացումը: Վառելիքի ու էներգիայի տարբեր տեսակների նկատմամբ աճող պահանջմունքների կայուն բավարարումը պահանջում է բարելավել վառելիքաէներգետիկ հաշվեկշռի կառուցվածքը, արագացնել ատոմային էներգետիկայի վերելքը, լայնորեն օգտագործել էներգիայի վերականգնելի աղբյուրները, տնտեսության բոլոր ճյուղերում հետևողականորեն տանել վառելիքաէներգետիկ ռեսուրսների խնայողության ակտիվ ու նպատակասլաց աշխատանք:

Սոցիալ-տնտեսական առաջընթացի պարտադիր պայմանն է **ագրոարդյունաբերական** համալիրի հետագա ամրապնդումն ու արդյունավետության բարձրացումը, նրա արտադրանքի նկատմամբ երկրի պահանջմունքների լրիվ բավարարումը: Առաջիկայում պետք է ավարտել գյուղատնտեսության փոխադրումը ինդուստրիալ հիմքի, ամենուրեք արմատավորել տնտեսության վարման գիտական համակարգեր, ինտենսիվ տեխնոլոգիաներ, բարելավել հողերի օգտագործումը և բարձրացնել դրանց բերրիությունը, հասնել գյուղատնտեսական կուլտուրաների բերքատվության և անասնապահության մթերատվության նշանակալի աճի, ամրապնդել կերի բազան, ապահովել գյուղատնտեսական արտադրության կայունությունը, թուլացնել դրա կախումը բնակլիմայական աննպաստ պայմաններից, բացառել աճեցված բերքի և անասնապահական մթերքների կորուստները: Կուժեղացվեն ագրոարդյունաբերական ինտեգրացիան և միջտնտեսային կոոպերացիան, նոր մակարդակի կբարձրացվեն տեխնիկան, տեխնոլոգիան և գյուղատնտեսական արտադրանքի արտադրության, մթերումների, փոխադրման, պահպանման ու վերամշակման կազմակերպումը:



Գյուղատնտեսական արտադրանքի նկատմամբ երկրի պահանջմունքների ապահովման գործում կոչված են վճռական ավանդ մուծելու կոլտնտեսությունները, սովխոզները, ագրոարդյունաբերական միավորումներն ու ձեռնարկությունները, որոնք կազմում են սոցիալիստական գյուղատնտեսության հիմքը: Դրա հետ մեկտեղ պարենային ռեսուրսների համալրման համար կօգտագործվեն ձեռնարկությունների ու քաղաքացիների օժանդակ տնտեսությունները, կոլեկտիվ այգեգործությունն ու բանջարաբուծությունը:

ՍՄԿԿ-ն ջանքերը կնպատակամղի **ժողովրդական սպառման ապրանքների** արտադրության և **սպասարկման ամբողջ ոլորտի** ավելի արագ աճի ապահովման, ելնելով սովետական մարդկանց պահանջմունքների համակողմանի բավարարման շահերից: Այդ գործում պետք է ներգրավվեն ժողովրդական տնտեսության բոլոր ճյուղերի ձեռնարկությունները, միավորումներն ու կազմակերպությունները:

Երկրի միասնական ժողովրդատնտեսական համալիրի կատարելագործման ասպարեզում կուսակցությունը կարևոր դեր է հատկացնում **արտադրական ինֆրակառուցվածքի** ճյուղերի՝ ժողովրդական տնտեսության էլեկտրանավթագազամատակարարման, կապի ու ինֆորմացիոն ապահովման համակարգերի տեխնիկական վերազինմանն ու դրանց աշխատանքի արդյունավետության բարձրացմանը: Առանձնակի ուշադրություն կնվիրվի միասնական տրանսպորտային համակարգի զարգացմանը, նրա բոլոր օղակների կատարելագործմանը, բարեկարգ ճանապարհների ճյուղավորված ցանցի ստեղծմանը:

Պետք է էականորեն բարձրացնել **շինարարության** տեխնիկատնտեսական մակարդակը, շինարարական արտադրությունը վերածել մի միասնական ինդուստրիալ պրոցեսի, բարձրացնել նախագծային ու շինարարական աշխատանքների որակը և իջեցնել դրանց արժեքը, կրճատել օբյեկտների կառուցման և արտադրական կարողությունների յուրացման ժամկետները:

Կուսակցությունն այսուհետև էլ անդուլ ուշադրություն կնվիրի **արտադրական ուժերի տեղաբաշխման** կատարելագործմանը, որը պետք է ապահովի հանրային աշխատանքի խնայողություն, յուրաքանչյուր ռեգիոնի կոմպլեքսային և բարձրարդյունավետ զարգացում: Աշխատանքի հասարակական բաժանումը խորացնելու հիմքի վրա հետագա զարգացում կստանա բոլոր միութենական հանրապետությունների ժողովրդական տնտեսությունը, կմեծանա դրանց ավանդը երկրի պահանջմունքների բավարարման գործում: Առաջիկայում պետք է է՛լ ավելի բարելավել ստեղծված տերիտորիալ արտադրական համալիրների և տնտեսական կապերի կառուցվածքը, հումքի վերամշակման ձեռնարկություններն առավելագույնս մոտեցնել դրա հանույթի վայրերին: Անհրաժեշտ է ավելի լրիվ օգտագործել փոքր, միջակ քաղաքների և բանվորական ավանների հնարավորությունները, դրանցում տեղաբաշխելով խոշոր ձեռնարկությունների հետ կոոպերացումով արտադրանքի պատրաստման, գյուղատնտեսական ու տեղական հումքի վերամշակման և բնակչության սպասարկման հետ առնչվող մասնագիտացված արտադրություններ:

Կուսակցության տնտեսական ստրատեգիայի բաղկացուցիչ մասը եղել և մնում է **Սիբիրի ու Հեռավոր Արևելքի** արտադրողական ուժերի արագ զարգացումը: Նոր շրջաններ յուրացնելիս տնտեսական և քաղաքական առանձնակի նշանակություն ունի արտադրական խնդիրների կոմպլեքսային լուծման և ամբողջ սոցիալական ինֆրակառուցվածքի զարգացման անշեղ ապահովումը՝ ի շահ մարդկանց աշխատանքի ու կյանքի պայմանների բարելավման:

Որոշելով ժողովրդական տնտեսության զարգացման հեռանկարները, ՍՄԿԿ-ն ելնում է **արտաքին տնտեսական ստրատեգիայի** կատարելագործման, աշխատանքի փոխշահավետ միջազգային բաժանման հնարավորությունների և, առաջին հերթին, սոցիալիստական տնտեսական ինտեգրացիայի առավելությունների ավելի լրիվ օգտագործման անհրաժեշտությունից: Կխորացվեն արտաքին տնտեսական և գիտատեխնիկական կապերը, կառուցվածքային առաջադիմական տեղաշարժեր կիրականացվեն արտահանության և ներմուծման մեջ՝ ելնելով ժողովրդական տնտեսության արդյունավետության բարձրացման, ստրատեգիապես կարևոր ուղղություններում կապիտալիստական երկրներից անկախ լինելն ապահովելու շահերից:

# Սոցիալիստական արտադրական հարաբերությունների, կառավարման համակարգի և տնտեսավարման մեթոդների կատարելագործումը

Հասարակության սոցիալ-տնտեսական առաջընթացն արագացնելու անհրաժեշտ նախադրյալներն են արտադրական հարաբերությունների մշտական կատարելագործումը, դինամիկորեն զարգացող արտադրողական ուժերին դրանց կայուն համապատասխանության պահպանումը, դրանց միջև ծագող ոչ հակամարտ հակասությունների ժամանակին բացահայտումն ու լուծումը:

Կուսակցության ուշադրության կենտրոնում այսուհետև էլ կգտնվեն **արտադրության միջոցների հանրային սեփականության ամրապնդումն ու բազմապատկումը,** որը սոցիալիզմի տնտեսական սիստեմի հիմքն է: Պետք է այսուհետև էլ բարձրացնել արտադրության հանրայնացման, նրա պլանաչափ կազմակերպման մակարդակը, անշեղորեն բարելավել համաժողովրդական սեփականության առավելությունների ու հնարավորությունների իրականացման ձևերն ու մեթոդները:

Գյուղատնտեսության արտադրողական ուժերի վերելքը, միջտնտեսային կոոպերացիայի և ագրոարդյունաբերական ինտեգրացիայի զարգացումը կնպաստեն համաժողովրդականի հետ կոլտնտեսային-կոոպերատիվ սեփականության հետագա մերձեցմանը, իսկ հեռանկարում՝ նաև միաձուլմանը: Դա տեղի կունենա սոցիալիստական սեփականության երկու ձևերի համակողմանի զարգացման ու ամրապնդման, էկոնոմիկայի կոլտնտեսային-կոոպերատիվ հատվածի հնարավորությունների ավելի ու ավելի լրիվ իրացման շնորհիվ:

Կուսակցությունը աշխատավորական կոլեկտիվներում, յուրաքանչյուր աշխատողի մեջ հաստատակամորեն կձևավորի հանրային սեփականության տիրոջ զգացումը, անհրաժեշտ միջոցներ կձեռնարկի սոցիալիստական սեփականությունը պաշտպանելու, շահադիտական նպատակներով դրա օգտագործման ամեն մի փորձ խափանելու, բարիքների յուրացման՝ սոցիալիզմին խորթ ձևերն արմատախիլ անելու, քաղաքացիների անձնական սեփականության սահմանադրական իրավունքն ապահովելու համար:

Կուսակցությունը մեծ նշանակություն է տալիս **բաշխման հարաբերությունների կատարելագործմանը,** որոնք ակտիվ ազդեցություն են գործում հանրային արտադրության զարգացման մեջ կոլեկտիվ և անձնական շահագրգռության աճի, մարդկանց կենսամակարդակի ու ապրելակերպի վրա: Հետևողականորեն կիրականացվի հանրային արտադրանքի և ազգային եկամտի առավել արդյունավետ բաշխման գիծը, որպեսզի բաշխման մեխանիզմը հուսալի պատնեշ ծառայի անաշխատ եկամուտների, աշխատանքի վարձատրության գործում հավասարեցման ճանապարհին, այն ամենի ճանապարհին, ինչը հակասում է սոցիալիստական հասարակության նորմաներին ու սկզբունքներին: Անհրաժեշտ է խիստ վերահսկողություն սահմանել աշխատանքի չափի և սպառման չափի նկատմամբ, ուժեղացնել կոլեկտիվների և յուրաքանչյուր աշխատողի շահագրգռությունը ժողովրդատնտեսական լավագույն արդյունքների հասնելու գործում, հմտորեն զուգորդել աշխատանքային գործունեության նյութական և բարոյական խթանները:

Հրատապ խնդիր է **փոխանակության հարաբերությունների** հետագա զարգացումը: Առաջիկայում պետք է բարձրացնել տնտեսական կապերի հուսալիությունը, հասնել պահանջարկի և առաջարկի դինամիկ համապատասխանության, բարելավել նյութական և դրամական ռեսուրսների շրջանառությունը, արագացնել շրջանառու միջոցների շրջանառելիությունը:

Արտադրության արդյունավետության բարձրացման, բաշխման, փոխանակության և սպառման կատարելագործման նպատակով կարևոր է ավելի լրիվ օգտագործել ապրանքադրամային հարաբերությունները՝ սոցիալիզմի օրոք դրանց բնորոշ նոր բովանդակությանը համապատասխան: Անհրաժեշտ է ուժեղացնել խնայողության ռեժիմը, աշխատանքի որակի և քանակի վերահսկողությունը ռուբլով, օգտագործել



տնտեսական լծակների և խթանների ամբողջ զինանոցը, ամրապնդել պետական բյուջեն, բարձրացնել ռուբլու գնողունակությունը:

Երկրի սոցիալ-տնտեսական զարգացման արագացումը պահանջում է **ժողովրդական տնտեսության ղեկավարման** մշտական **կատարելագործում,** տնտեսական մեխանիզմի հուսալի և արդյունավետ գործառնություն, որը ներառնում է տնտեսավարման բազմազան, ճկուն ձևեր ու մեթոդներ, ձգտել հասնելու այն բանին, որ դրանք համապատասխանեն տնտեսական զարգացման փոփոխվող պայմաններին և լուծվող խնդիրների բնույթին:

Կառավարման կատարելագործումը պետք է հենվի տնտեսության սոցիալիստական պլանային սիստեմի առավելությունների ու հնարավորությունների, տնտեսագիտական օրենքների ավելի խոր և ավելի բազմակողմանի օգտագործման վրա, լիովին հաշվի առնի արտադրողական ուժերի մեջ և արտադրական հարաբերություններում տեղի ունեցող փոփոխությունները, աշխատավորների լայն զանգվածների կրթվածության, գիտակցականության, որակավորման ու փորձի աճը: Այն կոչված է ապահովել անձնական շահերի, աշխատավորական կոլեկտիվների, տարբեր սոցիալական խմբերի շահերի օպտիմալ զուգորդումը համապետական, համաժողովրդական շահերի հետ և այսպիսով դրանք օգտագործել որպես էկոնոմիկայի աճի շարժիչ ուժ:

Կառավարման ամբողջ համակարգը պետք է ուղղված լինի ժողովրդական տնտեսության յուրաքանչյուր օղակի ավանդի մեծացմանը բարձրագույն նպատակի՝ հասարակության պահանջմունքների առավել լրիվ բավարարման ձեռքբերման գործում, ռեսուրսների բոլոր տեսակների առավել նվազագույն ծախսումներով այդ ներդրման ըստ ամենայնի ավելացմանը, որը սոցիալիստական տնտեսավարման անխախտ օրենքն է, ճյուղերի, միավորումների ու ձեռնարկությունների, արտադրական բոլոր բջիջների գործունեության գնահատման հիմնական չափանիշը:

Պետք է ապահովվի կառավարման լենինյան սկզբունքների ու, նախ և առաջ, **դեմոկրատական ցենտրալիզմի** սկզբունքի հետևողական իրագործումը, որն արտահայտում է նրա երկու հիմունքների՝ միավորումների ու ձեռնարկությունների կենտրոնացված ղեկավարման արդյունավետության բարձրացման և դրանց տնտեսական ինքնուրույնության ու պատասխանատվության նշանակալի ընդլայնման միասնությունը:

Կառավարման կենտրոնական մարմինների ուշադրությունը պետք է ավելի ու ավելի մեծ չափով բևեռել տնտեսական ու սոցիալական զարգացման ստրատեգիական խնդիրների լուծման վրա, գիտատեխնիկական առաջադիմության ու կապիտալ ներդրումների, ժողովրդական տնտեսության մեջ կառուցվածքային տեղաշարժերի, հանրային արտադրության համամասնականության և պլանային համապետական ռեզերվների համակարգի ամրապնդման, արտադրողական ուժերի, աշխատանքի վարձատրության և սոցիալական ապահովության, գների, տարիֆների, ֆինանսների, հաշվառման ու վիճակագրության բնագավառում միասնական քաղաքականության իրագործման վրա:

Կուսակցությունն անհրաժեշտ է համարում բարձրացնել **պլանավորման** գործունեությունը՝ որպես իր տնտեսական քաղաքականության իրականացման գործիքի: Պլանավորումը կոչված է լինելու երկրի սոցիալ-տնտեսական զարգացումն արագացնելու, գիտատեխնիկական առաջադիմության հիմքի վրա արտադրությունը ինտենսիվացնելու, առաջադիմական տնտեսական լուծումներ իրականացնելու ակտիվ լծակ, ապահովելու էկոնոմիկայի հաշվեկշռված ու դինամիկ աճ: Պլաններում առաջատար տեղ պետք է գրավեն որակական ցուցանիշները, որոնք արտացոլեն ռեսուրսների օգտագործման արդյունավետությունը, արտադրանքի նորացման մասշտաբները, աշխատանքի արտադրողականության աճը գիտության ու տեխնիկայի նվաճումների հիման վրա: Անհրաժեշտ է կոմպլեքսայնորեն լուծել տնտեսական ու սոցիալական խնդիրները, օրգանապես զուգորդել երկարաժամկետ, հնգամյա ու տարեկան պլանները, բարձրացնել պլանավորման գիտական մակարդակը, ամրապնդել պլանային կարգապահությունը, ապահովել համապետական շահերի գերադասությունը, վճռականորեն խափանել գերատեսչականության ու տեղայնության, բյուրոկրատիզմի ու վոլյունտարիզմի ամեն մի դրսևորում: Պահանջվում է լրջորեն բարելավել ֆինանսավարկային սիստեմի աշխատանքը, ուժեղացնել դրա ներգործությունը արտադրու-

թյան արդյունավետության բարձրացման վրա, դրամական շրջանառության և տնտհաշվարկի ամրապնդման վրա:

Զարգացնելով կենտրոնացման սկզբունքները կառավարման ու պլանավորման, ստրատեգիական խնդիրների լուծման գործում, կուսակցությունն ակտիվորեն կիրականացնի **հիմնական արտադրական օղակի՝** միավորումների ու ձեռնարկությունների **դերի բարձրացման միջոցառումներ,** հետևողականորեն կլայնի նրանց իրավունքների ու տնտեսական ինքնուրույնության ընդլայնման, պատասխանատվության ու շահագրգռության ուժեղացման գիծը վերջնական բարձր արդյունքների հասնելու գործում: Օպերատիվ-տնտեսական աշխատանքը պետք է կենտրոնանա տեղերում՝ աշխատավորական կոլեկտիվներում:

Կուսակցությունն անհրաժեշտ է համարում **տնտեսական հաշվարկի** հետագա զարգացումն ու գործունության բարձրացումը, ձեռնարկությունների ու միավորումների հետևողական փոխադրումը լրիվ տնտհաշվարկի՝ տնտեսական լծակների ուժեղացման և վերադաս կազմակերպությունների կողմից սահմանվող ցուցանիշների թվի կրճատման պայմաններում: Միավորումների ու ձեռնարկությունների գործունեությունն ավելի ու ավելի կկարգավորվի տևական գործողության տնտեսական այն նորմատիվներով, որոնք աշխատավորական կոլեկտիվների նախաձեռնության ու ստեղծագործության ասպարեզ են բացում: Վերևից կառավարումը կատարելագործելու միջոցառումները պետք է զուգորդվեն ներքևից աշխատանքի կազմակերպման ու խթանման կոլեկտիվ ձևերի զարգացման հետ: Լծակների և խթանների համակարգը կոչված է առավելություններ տալ աշխատավորական այն կոլեկտիվներին, որոնք հաջողությունների են հասնում գիտատեխնիկական առաջադիմության արագացման գործում, թողարկում են լավագույն արտադրանք, բարձրացնում արտադրության շահութաբերությունը: Կմեծանան միավորումների ու ձեռնարկությունների հնարավորություններն ու իրավունքները արտադրության զարգացման, կոլեկտիվների նյութական խրախուսման և սոցիալական հարցերի լուծման համար նրանց վաստակած միջոցների տնօրինման գործում:

Կընդլայնվի մեծածախ առևտուրը, կբարձրանա արտադրանքն սպառող ձեռնարկությունների և պատրաստողների ուղղակի կապերի և տնտեսական պայմանագրերի դերը, կուժեղանա սպառողի ազդեցությունը արտադրանքի տեխնիկական մակարդակի ու որակի վրա:

Պետք է կատարելագործել **գնագոյացումը** այն նպատակով, որպեսզի գներն ավելի ճիշտ արտացոլեն հասարակականորեն անհրաժեշտ ծախսերի մակարդակը, ինչպես նաև արտադրանքի ու սպասարկումների որակը, ավելի ակտիվորեն խթանեն գիտատեխնիկական առաջադիմությունը, ռեսուրսախնայողությունը, արտադրանքի տեխնիկատնտեսական և սպառողական հատկանիշների բարելավումը, ամենայն նորի, առաջավորի արմատավորումը, նպաստեն խնայողության ռեժիմի ուժեղացմանը:

ՍՄԿԿ-ն խնդիր է դնում հետևողականորեն կատարելագործել ժողովրդական տնտեսության **կառավարման կազմակերպական կառուցվածքը** բոլոր մակարդակներում, կրճատել կառավարչական ապարատը և լուծարքի ենթարկել նրա ավելորդ օղակները: Անհրաժեշտ է բարելավել ժողովրդատնտեսական խոշոր համալիրների, փոխկապակցված և համասեռ ճյուղերի խմբերի կառավարումը, հասնել խոշոր, միջակ և ոչ մեծ ձեռնարկությունների կառավարման և ճյուղային կառավարման ռացիոնալ զուգորդմանը տերիտորիալ կառավարման հետ, ընդլայնել արտադրական ու գիտաարտադրական միավորումների ցանցը և կատարելագործել դրանց աշխատանքը, խորացնել արտադրության մասնագիտացումը, զարգացնել դրա համակցումն ու կոոպերացումը:

Կառավարման միջճյուղային և ճյուղային մարմինների ուշադրությունը կկենտրոնացվի ճյուղերի զարգացման կարևորագույն ուղղությունների, գիտատեխնիկական նվաճումների արմատավորման վրա: Նրանք պետք է պատասխանատվություն կրեն սահմանված տեսականու և արտադրացանկի արտադրանքի նկատմամբ ժողովրդական տնտեսության ու բնակչության պահանջմունքների լրիվ բավարարման համար: Կբարձրանան հանրապետական ու տեղական մարմինների դերն ու պատասխանատվությունը տնտեսական և սոցիալ-կուլտուրական շինարարության կառավարման, աշխատավորների պահանջմունքների բավարարման գործում, կընդլայնվեն այդ մարմինների իրավունքները:



Էկոնոմիկայի ղեկավարումը կատարելագործելու ամբողջ աշխատանքում ՍՄԿԿ-ն հետևողականորեն կիրականացնի **աշխատավորների ստեղծագործական նախաձեռնությունը զարգացնելու և արտադրության կառավարման պրոցեսի մեջ նրանց ավելի ու ավելի լրիվ ներգրավելու** գիծը, պլանների մշակման ու տնտեսական որոշումների ընդունման, ձեռնարկությունների սոցիալ-տնտեսական զարգացման, արտադրության ներքին ռեզերվների որոնման ու մոբիլիզացման միջոցառումների իրականացման գործում աշխատավորական կոլեկտիվների դերը բարձրացնելու գիծը: Խնայողականությունը, ժողովրդական միջոցների խելացի ծախսումը, յուրաքանչյուր ռուբլու ռացիոնալ օգտագործումը, անտնտեսվարության վերացումը, տարբեր անարտադրողական ծախսերի ու կորուստների բացառումը համակուսակցական, համաժողովրդական գործ են, յուրաքանչյուր աշխատավորական կոլեկտիվի, յուրաքանչյուր աշխատողի գործը:

Կուսակցության մշտական ուշադրության առարկան **սոցիալիստական մրցության** զարգացումն է: Դա աշխատավորների ստեղծագործության ծավալման կարևորագույն ոլորտ է, անհատի ինքնահաստատման և հասարակական ճանաչման հիմնական եղանակներից մեկը: Հենվելով հրապարակայնության, արդյունքների համեմատելիության, առաջավոր փորձի ընդօրինակման հնարավորության լենինյան սկզբունքների վրա, անհրաժեշտ է կատարելագործել մրցության կազմակերպումը և բարձրացնել նրա ներգործունությունը, արմատախիլ անել ձևականությունն ու շաբլոնը, զարգացնել ընկերական համագործակցության ու փոխօգնության ոգին: Կարևորագույն նշանակություն ունի մասսաների նախաձեռնության ու ստեղծագործության համակողմանի պաշտպանությունը, որոնք նպատակամղված են գիտատեխնիկական առաջադիմության արագացմանը, աշխատանքի արտադրողականության աճին, ռեսուրսների խնայողական օգտագործմանը, արտադրության արդյունավետության և արտադրանքի որակի բարձրացմանը, դրա ինքնարժեքի իջեցմանը, աշխատանքային հստակ ռիթմի ապահովմանն ու պայմանագրային պարտավորությունների ժամանակին կատարմանը, ժողովրդատնտեսական լավագույն արդյունքների ձեռքբերմանը:

## III. Կուսակցության սոցիալական քաղաքականությունը

Կուսակցությունը սոցիալական քաղաքականությունը դիտում է որպես երկրի զարգացման արագացման, մասսաների աշխատանքային ու հասարակական-քաղաքական ակտիվության բարձրացման, նոր մարդու ձևավորման, սոցիալիստական ապրելակերպի հաստատման հզոր միջոց, որպես հասարակության քաղաքական կայունության կարևոր գործոն: Նա ելնում է այն բանից, որ էկոնոմիկայի արդյունավետության բարձրացման վրա, հասարակական կյանքի բոլոր ոլորտների վրա սոցիալական քաղաքականության ներգործությունը կուժեղանա: Աշխատանքի, կենցաղի, կուլտուրայի, սոցիալական հարցերի լուծման, մարդկանց հետաքրքրությունների ու կարիքների բավարարման նկատմամբ անդուլ հոգատարությունը ՍՄԿԿ-ն համարում է պետական ու տնտեսական բոլոր մարմինների, հասարակական կազմակերպությունների գործունեության օրենքը:

Կուսակցությունը որպես **սոցիալական քաղաքականության հիմնական խնդիրներ** առաջադրում է.

— սովետական մարդկանց կյանքի ու աշխատանքի պայմանների անշեղ բարելավումը.

— հասարակական հարաբերությունների բոլոր ոլորտներում սոցիալական արդարության սկզբունքի ավելի ու ավելի լրիվ իրականացումը.

— դասակարգերի և սոցիալական խմբերի ու խավերի մերձեցումը, մտավոր ու ֆիզիկական աշխատանքի, քաղաքի ու գյուղի միջև եղած էական տարբերությունների հաղթահարումը.

— ազգային հարաբերությունների կատարելագործումը, երկրի ազգերի ու ազգությունների եղբայրական բարեկամության ամրապնդումը:

## Սովետական մարդկանց բարեկեցության բարձրացումը, աշխատանքի ու կյանքի պայմանների բարելավումը

Երկրում ստեղծված արտադրական ու հոգևոր պոտենցիալը, երկրի սոցիալ-տնտեսական զարգացումն արագացնելու խնդիրները անհրաժեշտ և հնարավոր են դարձնում էական առաջընթացը «հասարակության **բոլոր** անդամների **լիակատար** բարեկեցությունը և ազատ **համակողմանի** զարգացումն» (Վ. Ի. Լենին) ապահովելու **համար:**

ՍՄԿԿ-ն խնդիր է դնում սովետական մարդկանց բարեկեցությունը բարձրացնել որակապես նոր աստիճանի, ապահովել նյութական, սոցիալական ու մշակութային բարիքների սպառման այնպիսի մակարդակ ու կառուցվածք, որոնք առավելագույնս կհամապատասխանեն ներդաշնակորեն զարգացած, հոգևպես հարուստ անհատի ձևավորման, սովետական մարդկանց ընդունակությունների ու տաղանդների լրիվ բացահայտման համար անհրաժեշտ պայմանների ստեղծման նպատակներին՝ ի շահ հասարակության:

Արդեն առաջիկա տասնհինգ տարում նախատեսվում է կրկնապատկել ժողովրդի պահանջմունքների բավարարման համար հատկացվող ռեսուրսների ծավալը:

**Կուսակցությունն առանձնահատուկ նշանակություն է տալիս աշխատանքի ստեղծագործական բովանդակության և կոլեկտիվիստական բնույթի ուժեղացմանը, դրա կուլտուրայի բարձրացմանը, բարձրորակ և բարձրարդյունավետ աշխատանքի խրախուսմանը՝ ի բարօրություն հասարակության:** Այդ ամենը կնպաստի աշխատանքն աստիճանաբար վերածելու յուրաքանչյուր սովետական մարդու առաջին կենսական պահանջմունքի:

Այսուհետև էլ իրականացվելու է գիտատեխնիկական, տնտեսական ու սոցիալական միջոցառումների համալիր, որոնք կապահովեն բնակչության լրիվ ու արդյունավետ զբաղվածությունը, բոլոր աշխատունակ քաղաքացիներին հնարավորություն կընձեռեն աշխատելու գործունեության ընտրված ոլորտում՝ կոչմանը, ընդունակություններին, կրթությանը, մասնագիտական պատրաստությանը համաձայն, հաշվի առնելով հասարակական պահանջմունքները:

Հետևողականորեն կիրագործվի ձեռքի աշխատանքն զգալիորեն նվազեցնելու, միապաղաղ, ծանր ֆիզիկական ու ցածր որակավորվող աշխատանքը էապես կրճատելու, իսկ հետագայում վերացնելու, սանիտարահիգիենիկ առողջ պայմաններ ապահովելու և անվտանգության կատարյալ տեխնիկա արմատավորելու գիծը, որոնք կվերացնեն արտադրական տրավմատիզմը և պրոֆեսիոնալ հիվանդությունները: Արտադրության ինտենսիվացումը, արդյունավետության և աշխատանքի արտադրողականության բարձրացումը հետագայում նոր հնարավորություններ կընձեռեն աշխատանքային օրը կրճատելու, վճարովի արձակուրդի տևողությունը ավելացնելու համար:

**Կուսակցությունը այսուհետև էլ անհրաժեշտ ամեն ինչ կանի աշխատավորների ռեալ եկամուտների անշեղ աճի և բոլոր խավերի ու սոցիալական խմբերի բարեկեցության հետագա վերելքի համար՝ երկրի տնտեսական հնարավորությունների համեմատ:**

Կոմունիզմի առաջին փուլի ընթացքում աշխատավորների եկամուտների հիմնական աղբյուրը մնում է ըստ աշխատանքի վարձատրությունը: Անհրաժեշտ է մշտապես կատարելագործել աշխատավարձի համակարգը, այն հաշվով, որպեսզի այն լիովին համապատասխանի աշխատանքի քանակի ու որակի վարձատրության սկզբունքին, հաշվի առնի նրա պայմաններն ու արդյունքները, խթանի աշխատողների որակավորման, աշխատանքի արտադրողականության, արտադրանքի որակի բարձրացումը, ռեսուրսների բոլոր տեսակների ռացիոնալ օգտագործումը և տնտեսումը: Հենց այդ հիման վրա պետք է աճեն աշխատավորների վաստակն ու կենսամակարդակը: Հանրային հարստության աճի համեմատ կավելանան նվազագույն աշխատավարձի չափերը, կշարունակվի բնակչությունից գանձվող հարկերը նվազեցնելու



գիծը: Կուսակցությունը սկզբունքային նշանակություն է տալիս անաշխատ եկամուտները, բաշխման սոցիալիստական սկզբունքներից ամեն տեսակ շեղումները վճռականորեն արմատախիլ անելուն:

Կշարունակվեն **սպառման հանրային ֆոնդերի** արագացված աճը և բաշխման կատարելագործումը, որոնք կոչված են հետզհետե ավելի մեծ դեր խաղալ անվճար ժողովրդական կրթության, առողջապահության և սոցիալական ապահովության համալետական համակարգերի զարգացման, աշխատավորների հանգստի պայմանների բարելավման գործում, մեղմացնել սոցիալիզմի օրոք օբյեկտիվորեն անխուսափելի տարբերություններն առանձին քաղաքացիների, ընտանիքների, սոցիալական խմբերի նյութական դրության մեջ, հավասարեցնել երեխաների դաստիարակության սոցիալ-տնտեսական ու կուլտուրական պայմանները, նպաստել բնակչության առանձին խմբերի սակավ ապահովվածության վերացմանը:

Առաջնահերթ կարևորության խնդիր է **ժողովրդական սպառման բարձրորակ ու բազմազան ապրանքների՝** սննդամթերքի, լավորակ ու գեղեցիկ հագուստի և կոշիկի, կահույքի, կուլտուրական նշանակության առարկաների, կենցաղային բարդ տեխնիկայի և տնտեսական գործածության ապրանքների **նկատմամբ բնակչության հարաճուն պահանջարկի լրիվ բավարարումը:**

Կշարունակեն զարգանալ **առևտուրն ու հասարակական սնունդը,** կամրապնդվի դրանց նյութատեխնիկական բազան, կաճի սպասարկման կուլտուրան: Այսուհետև էլ կզարգանա սպառողական կոոպերացիան, որը կոչված է կատարելագործել առևտուրը գյուղում, կազմակերպել գյուղատնտեսական մթերքների գնումները բնակչությունից և դրանց վաճառքը: Իր նշանակությունը կպահպանի կոլտնտեսային շուկան: Բնակչության ռեալ եկամուտների բարձրացման շահերից ելնելով՝ կիրականացվի մանրածախ գների քաղաքականություն:

Նախատեսվում է խոշոր միջոցառումներ իրականացնել **սպասարկման ժամանակակից բարձր զարգացած ոլորտ** ստեղծելու համար: Սպասարկումների ծավալի մեծացումը, տեսականու ընդլայնումը և որակի բարձրացումը հնարավորություն կտան ավելի լրիվ բավարարել բնակչության աճող պահանջմունքները բնակարանային-կոմունալ, տրանսպորտի, կենցաղային, սոցիալ-կուլտուրական սպասարկման բազմազան ձևերի նկատմամբ, թեթևացնել տնային աշխատանքը, լավագույն պայմաններ ստեղծել հանգստի և ազատ ժամանակի բովանդակալից օգտագործման համար: Ավելի արագ կզարգանա սպասարկման ոլորտը գյուղական վայրերում և նոր յուրացվող շրջաններում:

Կուսակցությունը սոցիալական առաջնակարգ նշանակության գործ է համարում **բնակարանային պրոբլեմի** լուծման արագացումը, որպեսզի մինչև 2000 թվականը փաստորեն ամեն մի սովետական ընտանիք ունենա առանձին տուն՝ բնակարան կամ տուն: Դրան կոչված են նպաստելու պետական միջոցների հաշվին կատարվող բնակարանային շինարարության խոշոր մասշտաբները, կոոպերատիվ և անհատական շինարարության ավելի լայն զարգացումը, ինչպես նաև բնակարանային ֆոնդի վերակառուցումը, նորացումն ու պահպանության ուժեղացումը, դրա բաշխման նկատմամբ վերահսկողության խստացումը: Առանձնակի նշանակություն կդարձվի բնակարանային շինարարության որակին, ճարտարապետության բարձրացմանը, հատակագծման բարելավմանը, բնակարանների ու տների տեխնիկական հագեցվածության կատարելագործմանը:

Ավելի բարձր պահանջներ կներկայացվեն ճարտարապետությանը, քաղաքային և գյուղական բնակավայրերի գեղագիտական ձևավորմանն ու բարեկարգմանը: Բնակավայրերը պետք է իրենցից ներկայացնեն արտադրական գոտիների, բնակելի շրջանների, հասարակական, մշակութային և ուսումնադաստիարակչական հիմնարկների ցանցի, առևտրի ու կենցաղի ձեռնարկությունների, մարզական կառույցների, հասարակական տրանսպորտի ռացիոնալ կազմակերպված կոմպլեքսներ, որոնք լավագույն պայմաններ ապահովեն մարդկանց աշխատանքի, կենցաղի և հանգստի համար: Կընդլայնվի բնակարանային ու կուլտուր-կենցաղային պայմանների, ժամանցի, տուրիզմի բարելավման և այլ նպատակների համար բնակչության միջոցների ներգրավման պրակտիկան:

Առաջնահերթ կարևորության գործ են **սովետական մարդկանց առողջության ամրապնդումը,** նրանց ակտիվ կյանքի տևողության ավելացումը: Կուսակցությունը

թյունը: Գործելով սահմանադրության շրջանակներում, ՍՄԿԿ-ն ուղղություն է տալիս և կոորդինացնում պետական ու հասարակական կազմակերպությունների աշխատանքը, հոգում է այն մասին, որ նրանցից յուրաքանչյուրը լիակատար չափով կատարի իրեն ներհատուկ ֆունկցիաները: Կուսակցությունը իր ամբողջ գործունեությամբ ժողովրդի շահերին ծառայելու, սոցիալիստական դեմոկրատիզմի սկզբունքները պահպանելու օրինակ է տալիս:

Կուսակցությունը հոգում է այն մասին, որ հասարակության և պետության կառավարման մեջ հետևողականորեն կենսագործվեն ժողովրդի սոցիալիստական ինքնակառավարման սկզբունքները՝ այսինքն, կառավարումը ոչ միայն իրականացվի ի շահ աշխատավորների, այլև օրինաչափորեն, ավելի ու ավելի մեծ չափով դառնա հենց աշխատավորների անմիջական գործը, որոնք իրենց վրա չեն ընդունում Վ. Ի. Լենինի բառերով ասած՝ ոչ մի իշխանություն, բացի իրենց սեփական միավորման իշխանությունից:

Կուսակցությունը այսուհետև էլ կնպաստի այն բանին, որ ընդլայնվեն և հարստանան քաղաքացիների սոցիալ-տնտեսական, քաղաքական և անձնական իրավունքներն ու ազատությունները, ավելի բարենպաստ պայմաններ և երաշխիքներ ստեղծվեն դրանց լիակատար իրականացման համար: Սովետական մարդը բոլոր հնարավորություններն ունի իր քաղաքացիական կամքն ու շահերը արտահայտելու և իրականացնելու համար, օգտվում է այն բոլոր բարիքներից, որ նրան տալիս է սոցիալիզմը: Սովետական քաղաքացու կողմից իր իրավունքների և ազատությունների իրացումը անբաժանելի է իր սահմանադրական պարտականությունների կատարումից: Չկան իրավունքներ առանց պարտականությունների, չկան պարտականություններ առանց իրավունքների: Սա սոցիալիստական հասարակության քաղաքական անխախտ սկզբունքն է: ՍՄԿԿ-ն այսուհետև էլ հաստատակամորեն կձգտի այն բանին, որ յուրաքանչյուր սովետական մարդ դաստիարակվի իր իրավունքների, ազատությունների և պարտականությունների միասնության պարզորոշ ըմբռնման ոգով:

Կուսակցության քաղաքականության հանգուցային հարցը **սովետական սոցիալիստական պետության զարգացումն է և ամրապնդումը,** նրա դեմոկրատական, համաժողովրդական, ստեղծագործ, արարիչ դերի ավելի ու ավելի լրիվ բացահայտումը:

ՍՄԿԿ-ն մշտապես հոգում է ժողովրդական դեպուտատների սովետների՝ ՍՍՀՄ-ի քաղաքական հիմքի, ժողովրդի սոցիալիստական ինքնակառավարման գլխավոր օղակի գործունեության բարելավման մասին: Կուսակցությունը կարևոր նշանակություն է տալիս ժողովրդի ներկայացուցչության ձևերի կատարելագործմանը, սովետական ընտրական սիստեմի դեմոկրատական սկզբունքների զարգացմանը, դեպուտատության թեկնածուների անձնական ու գործարար հատկանիշների ազատ ու համակողմանի քննարկման ապահովմանը այն հաշվով, որպեսզի սովետների կազմում ընտրվեն բանվոր դասակարգի, կոլտնտեսային գյուղացիության, ժողովրդական մտավորականության, երկրի բոլոր ազգերի և ազգությունների առավել արժանավոր և հեղինակավոր ներկայացուցիչները: Սովետների աշխատանքը բարելավելու և նրանցում նոր ուժերի ներհոսքի համար, այն բանի համար, որ պետության կառավարման դպրոց անցնեն նորանոր միլիոնավոր աշխատավորներ, ընտրություններում սովետների դեպուտատների կազմը սիստեմատիկաբար կնորացվի:

ՍՄԿԿ-ն մշտապես նպաստում է այն բանին, որ ՍՍՀՄ Գերագույն սովետը և միութենական հանրապետությունների գերագույն սովետները հետևողականորեն կատարելագործեն օրենսդրությունը, արդյունավետորեն լուծեն ներքին ու արտաքին քաղաքականության՝ իրենց իրավասությանը վերաբերող հանգուցային պրոբլեմները, ակտիվորեն ղեկավարեն ժողովրդական դեպուտատների սովետներին, ստուգեն հաշվետու մարմինների աշխատանքը: Այսուհետև էլ կաճեն տեղական սովետների դերն ու պատասխանատվությունը ռեգիոնների տնտեսական ու սոցիալական կոմպլեքսային զարգացումն ապահովելու գործում, տեղական նշանակություն ունեցող խնդիրները ինքնուրույնաբար լուծելու, իրենց տարածքում գտնվող կազմակերպությունների գործունեությունը կոորդինացնելու և վերահսկելու ասպարեզում:

Պետք է բոլոր պայմանները ստեղծել, որպեսզի խստիվ կատարվեն լենինյան ցուցումները սովետների, որպես այնպիսի մարմինների մասին, որոնք ոչ միայն որոշումներն են ընդունում, այլև կազմակերպում են դրանց կենսագործումը և կատար-



ման ստուգումը: Ցանկացած մակարդակի սովետների գործունեության մեջ պետք է ավելի ու ավելի լրիվ իրականացվեն աշխատանքի դեմոկրատական սկզբունքները՝ հարցերի կոլեկտիվ, ազատ, գործարար քննարկում և լուծում, հրապարակայնություն, քննադատություն և ինքնաքննադատություն, դեպուտատների կանոնավոր հաշվետվություն և պատասխանատվություն՝ ընդհուպ մինչև ետկանչումը նրանց, ովքեր չեն արդարացրել ընտրողների վստահությունը, գործադիր և մյուս մարմինների աշխատանքի վերահսկողություն, քաղաքացիների լայն ներգրավում կառավարմանը մասնակցելու գործին:

Կուսակցությունը անշեղորեն կվարի **կառավարման դեմոկրատացման, պետական որոշումների մշակման և ընդունման պրոցեսի դեմոկրատացման գիծ,** պրոցես, որն ապահովում է դրանց տարբերակների ընտրություն, աշխատավորների տարբեր կարծիքների և առաջարկությունների հաշվառում ու համադրում: Կընդլայնվի այն հարցերի շրջանակը, որոնց առթիվ որոշումներ կարող են ընդունվել աշխատավորական կոլեկտիվներում, սովետների մշտական հանձնաժողովներում, արհմիութենական, կոմերիտական և մյուս հասարակական կազմակերպություններում քննարկվելուց հետո միայն: Առավել կարևոր օրինագծերը և որոշումները կդրվեն համաժողովրդական քննարկման ու հանրաքվեի: Պետք է այսուհետև էլ կատարելագործել ընտրողների պատվիրանների, քաղաքացիների դիմումների ու առաջարկությունների ընդհանրացման ու իրացման, հասարակական կարծիքի ուսումնասիրման համակարգը, բարձրացնել բնակչության իրազեկությունը ընդունված որոշումների և դրանց կատարման արդյունքների մասին:

Հատուկ նշանակություն են ստանում արտադրական և սոցիալ-տնտեսական շինարարության կառավարման բոլոր հարցերում, հասարակության քաղաքական կյանքում աշխատավորական կոլեկտիվների իրավունքների ընդլայնումը և ակտիվության զարգացումը: Կբարձրացվեն աշխատավորական կոլեկտիվների ընդհանուր ժողովների և խորհուրդների դերը, նրանց ընդունած որոշումների կատարման գործում ադմինիստրացիայի պատասխանատվությունը, կիրականացվի անցում վարպետների, տեղամասերի պետերի, արտադրական մյուս ստորաբաժանումների ղեկավարների ընտրովիությանը:

Մեծ կարևորության գործ է պետական ապարատի, կառավարման բոլոր մարմինների աշխատանքի կատարելագործումը: Սովետական ապարատը ծառայում է ժողովրդին և հաշվետու է ժողովրդին: Այն պետք է լինի որակյալ և օպերատիվ: Պետք է հասնել կառավարչական ապարատի պարզեցման և էժանացման, հաստիքային ավելորդությունների վերացման, հաստատակամորեն արմատախիլ անել բյուրոկրատիզմի ու ձևամոլության, գերատեսչականության ու տեղայնության դրսևորումները, առանց ձգձգումների ազատվել անձեռնհաս և անձեռներեց աշխատողներից: Անբարեխղճությունը, պաշտոնական դիրքի չարաշահումը, կարիերիզմը, անձնական հարստացման տենչը, խնամիականությունը և պրոտեկցիոնիզմը պետք է վճռականորեն արմատախիլ արվեն և պատժվեն:

Կուսակցությունը անհրաժեշտ է համարում խիստ պահպանել պետական մարմինների աշխատողների հաշվետվության սկզբունքը, ընդլայնել պաշտոնափոխման ընտրովիությունը և մրցութային համակարգը: Պետք է հետևողականորեն իրականացնել կոլեգիալությունը աշխատանքում՝ յուրաքանչյուր ղեկավարի անձնական պատասխանատվությամբ հանդերձ, աշխատողներին գնահատել օբյեկտիվորեն, ըստ նրանց պրակտիկ գործերի, արդյունավետորեն վերահսկել ընդունված որոշումների փաստական կատարումը:

ՍՄԿԿ-ն ակտիվորեն կնպաստի պետական և հասարակական վերահսկողության գործունեության բարձրացմանը: **Ժողովրդական վերահսկողության** մարմիններում աշխատավորների աշխատանքը կուսակցությունը դիտում է որպես նրանց քաղաքական հասունության և ժողովրդի շահերի պաշտպանության ասպարեզում ակտիվության զարգացման, գործի նկատմամբ պետական մոտեցում, ժողովրդական սեփականության նկատմամբ տնտեսատիրոջ վերաբերմունք դաստիարակելու կարևոր ձև:

Կուսակցության մշտական հոգատարության առարկա են եղել և մնում են **պետական ու հասարակական կյանքի իրավական հիմքի ամրապնդումը,** սոցիալիստական օրինականության ու իրավակարգի անշեղ պահպանումը, արդարադատության

մարմինների, դատախազական հսկողության, արդարադատության ու միլիցիայի աշխատանքի բարելավումը: Հենվելով աշխատավորական կոլեկտիվների, հասարակական կազմակերպությունների, բոլոր աշխատավորների աջակցության վրա, պետական մարմինները պարտավոր են անհրաժեշտ ամեն ինչ անել սոցիալիստական սեփականության պահպանումն ապահովելու, քաղաքացիների անձնական ունեցվածքը, պատիվն ու արժանապատվությունը պաշտպանելու համար, վճռական պայքար մղելու հանցագործության, հարբեցողության և ալկոհոլիզմի դեմ, կանխելու ամեն տեսակ իրավախախտումները և վերացնելու դրանց նախապատճառները:

**Սովետական Միության կոմունիստական կուսակցությունը սոցիալիստական հայրենիքի պաշտպանությունը, երկրի պաշտպանունակության ամրապնդումը և պետական անվտանգության ապահովումը դիտում է որպես սովետական պետության կարևորագույն ֆունկցիաներից մեկը:**

Մեր հասարակությունը ներքին պայմանների առումով բանակի կարիք չունի: Սակայն քանի դեռ գոյություն ունի իմպերիալիզմի կողմից ագրեսիվ պատերազմների և ռազմական կոնֆլիկտների սանձազերծման վտանգը, կուսակցությունը չթուլացող ուշադրություն կնվիրի ՍՍՀՄ-ի պաշտպանական հզորության ուժեղացմանը, նրա անվտանգության ամրապնդմանը, զինված ուժերի պատրաստությանը՝ ջախջախելու ամեն մի ագրեսորի: Զինված ուժերը և պետական անվտանգության մարմինները պետք է բարձր զգոնություն ցուցաբերեն, մշտապես պատրաստ լինեն խափանելու իմպերիալիզմի ոտնձգությունները ՍՍՀՄ-ի ու նրա դաշնակիցների դեմ:

Սոցիալիստական հայրենիքի պաշտպանության ամրապնդման հիմքերի հիմքը ռազմական շինարարության, զինված ուժերի ղեկավարումն է կոմունիստական կուսակցության կողմից: Կուսակցության ղեկավար դերի պայմաններում են մշակվում և իրականացվում երկրի պաշտպանության և անվտանգության բնագավառի քաղաքականությունը, սովետական ռազմական դոկտրինան, որը զուտ պաշտպանողական բնույթ է կրում և նպատակամղված է արտաքին հարձակումից պաշտպանվելուն:

ՍՄԿԿ-ն բոլոր ջանքերը կգործադրի, որպեսզի ՍՍՀՄ զինված ուժերը գտնվեն այնպիսի մակարդակում, որը բացառում է իմպերիալիզմի ուժերի ստրատեգիական գերազանցությունը, որպեսզի համակողմանիորեն կատարելագործվի սովետական պետության պաշտպանունակությունը, ամրապնդվի եղբայրական սոցիալիստական երկրների բանակների մարտական ընկերակցությունը:

Կուսակցությունը այսուհետև էլ մշտապես կհոգա այն մասին, որ սովետական զինված ուժերի մարտական պոտենցիալը իրենից ներկայացնի անձնակազմի զորական վարպետության և տեխնիկական բարձր զինվածության, գաղափարական տոկունության, կազմակերպվածության և կարգապահության, հայրենասիրական և ինտերնացիոնալ պարտքին նրա հավատարմության մի ամրակուռ համաձուլվածք:

ՍՄԿԿ-ն անհրաժեշտ է համարում այսուհետև էլ ուժեղացնել իր կազմակերպող և ուղղություն տվող ազդեցությունը զինված ուժերի կյանքի ու գործունեության վրա, ամրապնդել միանձնյա ղեկավարումը, բարձրացնել սովետական բանակի ու ռազմածովային նավատորմի քաղմարմինների և կուսակցական կազմակերպությունների դերն ու ազդեցությունը, հասնել այն բանին, որ է՛լ ավելի ամրապնդվի բանակի հոգեհարազատ կապը ժողովրդի հետ: Յուրաքանչյուր կոմունիստ, յուրաքանչյուր սովետական մարդ պարտավոր է իրենից կախված ամեն ինչ անել երկրի պաշտպանունակությունը պատշաճ մակարդակում պահպանելու համար: **Սոցիալիստական հայրենիքի պաշտպանությունը, ծառայությունը զինված ուժերի շարքերում ՍՍՀՄ քաղաքացու պատվավոր պարտականությունն է և սրբազան պարտքը:**

Կուսակցությունը առաջնահերթ նշանակություն է տալիս հասարակական կազմակերպությունների՝ ժողովրդի սոցիալիստական ինքնակառավարման համակարգի այդ կարևոր օղակների դերի բարձրացմանը:

ՍՄԿԿ-ն իր խնդիրն է համարում նպաստել **արհեստակցական միությունների՝** աշխատավորների առավել մասսայական կազմակերպության, կառավարման դպրոցի, տնտեսավարման դպրոցի, կոմունիզմի դպրոցի, հեղինակության և ազդեցության մշտական աճին: Արհմիությունները կոչված են հետևողականորեն կատարելու իրենց հիմնական ֆունկցիաները՝ ըստ ամենայնի նպաստելու ժողովրդական հարստության բազմապատկմանը, աշխատավորների աշխատանքի, կենցաղի ու հանգստի պայմանների բարելավմանը, պաշտպանելու նրանց իրավունքներն ու շահերը, մշտապես



զբաղվելու մասսաների կոմունիստական դաստիարակությամբ, նրանց մասնակից դարձնելու արտադրական ու հասարակական գործերի կառավարմանը, ամրապնդելու գիտակցական աշխատանքային կարգապահությունը:

Արհմիութենական կազմակերպությունների խնդիրն է է՛լ ավելի ակտիվորեն մասնակցել ժողովրդի սոցիալիստական ինքնակառավարման զարգացմանը, պետական, տնտեսական ու մշակութային շինարարության արմատական հարցերի լուծմանը, ավելի սերտորեն համագործակցել սովետների և աշխատավորների մյուս կազմակերպությունների հետ, բարձրացնել սոցիալիստական մրցության, առաջավոր փորձի պրոպագանդման և ներդրման մակարդակը, զարգացնել սոցիալական արդարության սկզբունքի պահպանումը վերահսկելու հասարակական ձևերը, նպաստել աշխատավորական կոլեկտիվների լիազորությունների իրացմանը:

ՍՄԿԿ-ն իրավամբ իր ակտիվ օգնականը և հուսալի ռեզերվն է համարում **համամիութենական լենինյան կոմունիստական երիտասարդական միությունը՝** հասարակական-քաղաքական բազմամիլիոնանոց կազմակերպությունը, որը միավորում է սովետական երիտասարդության առաջավոր մասը: Կուսակցությունը այսուհետև էլ կբարձրացնի կոմերիտմիության դերը աճող հերթափոխի դաստիարակության, պիոներական կազմակերպության աշխատանքի բարելավման գործում, երկրի սոցիալ-տնտեսական զարգացման արագացման խնդիրների պրակտիկ լուծման գործում:

Իրականացնելով կոմերիտմիության ղեկավարումը, ՍՄԿԿ-ն հատուկ ուշադրություն է նվիրում նրա շարքերի կազմակերպական-քաղաքական ամրապնդմանը, երիտասարդական միության ինքնագործ բնույթի ամրապնդմանը: Կոմերիտմիությունը պետք է հետևողականորեն զարգացնի պատանիների ու աղջիկների աշխատանքային ու հասարակական ակտիվությունը, նրանց մեջ ձևավորի մարքս-լենինյան աշխարհայացք, քաղաքական և բարոյական կուլտուրա, սոցիալիզմի և աշխարհի բախտի համար պատմական պատասխանատվության գիտակցում: Կուսակցությունը նպաստում է **կոոպերացիայի՝** կոլտնտեսությունների, սպառողական, բնակշինարարական կոոպերատիվների և կոոպերատիվ կազմակերպությունների ու միավորումների գործունեության կատարելագործմանը, դրանք դիտելով որպես սոցիալիստական ինքնակառավարման կարևոր ձև և ժողովրդական տնտեսության զարգացման արդյունավետ միջոց:

ՍՄԿԿ-ն կնպաստի **ստեղծագործական միությունների, գիտական, գիտատեխնիկական, կուլտուր-լուսավորական, մարզական, պաշտպանական և մյուս կամավոր ընկերությունների, բնակչության հասարակական ինքնագործունեության մարմինների** ակտիվության հետագա վերելքին: Կատարելով իրենց ֆունկցիաները, այդ կազմակերպությունները կոչված են ավելի ու ավելի մեծ ավանդ ներդնելու կուսակցության քաղաքականության իրականացման մեջ, հոգալու դրանցում միավորված աշխատավորների շահերի առավել լրիվ արտահայտման ու կենսագործման մասին, սովետական մարդկանց քաղաքացիական նախաձեռնության և պատասխանատվության ուժեղացման մասին:

## V. Գաղափարադաստիարակչական աշխատանք, կրթություն, գիտություն և մշակույթ

Կուսակցությունը անհրաժեշտ ամեն ինչ կանի, որպեսզի մարքս-լենինյան գաղափարախոսության վերափոխիչ ուժը լիակատար չափով օգտագործի երկրի սոցիալ-տնտեսական զարգացումն արագացնելու համար, նպատակասլաց աշխատանք կատարի սովետական մարդկանց գաղափարաքաղաքական, աշխատանքային ու բարոյական դաստիարակության ուղղությամբ, **ներդաշնակորեն զարգացած հանրորեն ակտիվ անհատի ձևավորման ուղղությամբ, որն իր մեջ զուգորդի հոգևոր հարստությունը, բարոյական անաղարտությունը և ֆիզիկական կատարելությունը:**

Գաղափարախոսական աշխատանքում գլխավորը ՍՄԿԿ-ն համարում է աշխատավորների դաստիարակումը բարձր գաղափարայնության և կոմունիզմին նվիրվա-

ծության ոգով, սովետական հայրենասիրության և պրոլետարական, սոցիալիստական ինտերնացիոնալիզմի ոգով, աշխատանքի և հանրային սեփականության նկատմամբ գիտակցական վերաբերմունքի ոգով, մասսաների ավելի ու ավելի լրիվ հաղորդակցումը հոգևոր մշակույթի գանձերին, սոցիալիստական ապրելակերպին հակասող բարքերի իսպառ վերացումը:

Կուսակցությունը ելնում է այն բանից, որ մարդու դաստիարակումը անբաժանելի է ժողովրդի բարօրության օգտին կատարվող գիտակցական աշխատանքից, հասարակական կյանքին, սոցիալ-տնտեսական ու մշակութային շինարարության խնդիրների լուծմանը նրա պրակտիկ մասնակցությունից: Իրականությունից, նրա ռեալ պրոբլեմներից խզումը գաղափարադաստիարակչական աշխատանքը դատապարտում է վերացական լուսավորչականության, անբովանդակ դատարկաբանության, շեղում է կոմունիստական արարման կենսական խնդիրներից: Գաղափարախոսական աշխատանքին պետք է հատուկ լինեն հասարակական պրակտիկայի հետ սերտ շաղկապվածությունը, գաղափարատեսական բովանդակության խորությունը, ներքին և միջազգային կյանքի իրողությունների, աշխատավորների աճած հոգևոր պահանջմունքների լրիվ և ստույգ հաշվառումը, մարդկանց հետ սրտամոտությունը, ճշմարտացիությունը, փաստարկվածությունը, կոնկրետությունը:

Խոսքի և գործի միասնությունը՝ կուսակցական ու պետական ամբողջ գործունեության կարևորագույն սկզբունքը, նաև գաղափարադաստիարակչական աշխատանքին ներկայացվող պարտադիր պահանջն է: Այդ աշխատանքին ակտիվորեն մասնակցելը բոլոր ղեկավար կադրերի պարտականությունն է, յուրաքանչյուր կոմունիստի պարտքը:

Կուսակցությունը առաջադրում է հետևյալ խնդիրները.

## Գաղափարադաստիարակչական աշխատանքի բնագավառում

**Գիտական աշխարհայացքի ձևավորումը:** Սոցիալիզմը ապահովել է սովետական հասարակության կյանքում գիտական աշխարհայացքի տիրապետությունը, որի հիմքը կազմում է մարքսիզմ-լենինիզմը՝ որպես փիլիսոփայական, տնտեսագիտական և սոցիալ-քաղաքական հայացքների մի ամբողջական և կուռ համակարգ: Կուսակցությունն իր կարևորագույն պարտականությունն է համարում մարքս-լենինյան տեսության հետագա ստեղծագործական զարգացումը սովետական հասարակության կյանքի նոր երևույթների ուսումնասիրման և ընդհանրացման, սոցիալիստական ընկերակցության մյուս երկրների, համաշխարհային կոմունիստական, բանվորական, ազգային-ազատագրական ու դեմոկրատական շարժումների փորձի հաշվառման, բնական, տեխնիկական ու հասարակական գիտությունների նվաճումների վերլուծության հիման վրա:

ՍՄԿԿ-ն մշտապես կհոգա այն մասին, որ բոլոր սովետական մարդիկ խորապես տիրապետեն մարքս-լենինյան ուսմունքին, բարձրացնեն քաղաքական կուլտուրան, գիտակցորեն մասնակցեն կուսակցության քաղաքականության մշակմանը և ակտիվորեն կենսագործեն այն:

**Աշխատանքային դաստիարակությունը:** Դաստիարակչական աշխատանքի կենտրոնում կուսակցությունը դնում է ընդհանուրի բարօրության օգտին բարեխիղճ աշխատանքի նկատմամբ յուրաքանչյուր սովետական մարդու մեջ խոր հարգանքի և պատրաստակամության ձևավորումը, անկախ նրանից՝ խոսքը վերաբերում է մտավոր, թե ֆիզիկական աշխատանքին: Աշխատանքը հասարակության նյութական և հոգևոր հարստության հիմնական աղբյուրն է, մարդու սոցիալական վարկի չափանիշը, նրա սրբազան պարտականությունը, անհատի կոմունիստական դաստիարակության հիմքը: Կուսակցությունը այսուհետև էլ կհոգա ազնիվ, բարձրարտադրողական աշխատանքի հեղինակությունը բարձրացնելու, աշխատանքում նախաձեռնությունն ու ստեղծագործությունը զարգացնելու, աշխատանքի նկատմամբ կոմունիստական վերաբերմունքի հիմունքները ամրապնդելու մասին:

**Կոմունիստական բարոյականության հաստատումը:** Դեպի կոմունիզմ աստիճանական առաջընթացի պայմաններում ավելի ու ավելի լրիվ է բացահայտվում կոմու-



նիստական՝ ամենամարդկային, արդարացի, ազնիվ բարոյականության ստեղծագործական պոտենցիալը, բարոյականություն, որը խարսխված է հեղափոխական պայքարի նպատակներին, կոմունիզմի իդեալներին հավատարմության վրա: Մեր բարոյականությունն իր մեջ ներառել է ինչպես համամարդկային բարոյական արժույթները, այնպես էլ մարդկանց վարքագծի և նրանց միջև փոխհարաբերությունների այն նորմերը, որ ժողովրդական զանգվածները կյանքի են կոչել շահագործման դեմ, ազատության ու սոցիալական հավասարության, երջանկության և խաղաղության համար մղված բազմադարյա պայքարում:

Կոմունիստական բարոյականությունը, հանուն որի հաստատման հանդես է գալիս ՍՄԿԿ-ն, նշանակում է.

— **կոլեկտիվիստական բարոյականություն:** «Մեկը բոլորի, բոլորը՝ մեկի համար». սա է նրա հիմնարար սկզբունքը: Այն անհամատեղելի է եսամոլության, անձնապաշտության և շահամոլության հետ, ներդաշնակորեն զուգորդում է համաժողովրդական, կոլեկտիվ ու անձնական շահերը.

— **հումանիստական բարոյականություն:** Այն վեհացնում է աշխատավոր մարդուն, տոգորված է նրա նկատմամբ խորին հարգանքով, անհանդուրժող է նրա արժանապատվության հանդեպ ոտնձգությունների նկատմամբ: Այն հաստատում է մարդկանց միջև հիրավի մարդկային հարաբերություններ՝ ընկերական համագործակցության ու փոխօգնության հարաբերություններ, բարյացակամություն, ազնվություն, պարզություն ու համեստություն անձնական և հասարակական կյանքում.

— **ակտիվ, գործարար բարոյականություն:** Այն մարդուն մղում է աշխատանքային ու ստեղծագործական նոր մեծագործությունների, կոլեկտիվի ու ամբողջ երկրի կյանքին շահագրգիռ մասնակցության, այն ամենը ակտիվորեն մերժելուն, ինչը հակասում է սոցիալիստական ապրելակերպին, կոմունիստական իդեալների համար մղվող հաստատակամ պայքարին:

**Հայրենասիրական և ինտերնացիոնալ դաստիարակություն:** Կուսակցությունն այսուհետև էլ անդուլ կերպով կաշխատի, որպեսզի սովետական մարդու մեջ սերը Հոկտեմբերի հայրենիքի, այն հողի հանդեպ, որտեղ նա ծնվել ու մեծացել է, հպարտությունը աշխարհի առաջին սոցիալիստական պետության պատմական մեծագործությունների համար զուգորդվեն պրոլետարական, սոցիալիստական ինտերնացիոնալիզմի հետ, եղբայրական երկրների աշխատավորների, բոլոր նրանց նկատմամբ դասակարգային համերաշխության զգացումի հետ, ովքեր պայքարում են ընդդեմ իմպերիալիզմի, հանուն սոցիալական առաջադիմության ու խաղաղության:

Կուսակցությունը, մեր պետությունը շահագրգռված են այն բանում, որպեսզի յուրաքանչյուր սովետական մարդու ներհատուկ լինեն ՍՍՀՄ բոլոր ազգերին ու ազգություններին միավորող բարեկամության ու եղբայրության զգացումները, ազգամիջյան հաղորդակցության բարձր կուլտուրան, անհանդուրժողությունը նացիոնալիզմի ու շովինիզմի, ազգային սահմանափակվածության ու ազգային եսամոլության դրսևորումների նկատմամբ, այն սովորույթների ու բարքերի նկատմամբ, որոնք խանգարում են կյանքի կոմունիստական նորացմանը:

Գաղափարադաստիարակչական աշխատանքի կարևոր խնդիրը մնում է ռազմահայրենասիրական դաստիարակությունը, սոցիալիստական հայրենիքը պաշտպանելու, իր բոլոր ուժերը և, եթե պահանջվի, նաև կյանքը նրան նվիրաբերելու պատրաստակամության ձևավորումը:

**Իրավական դաստիարակություն:** Կուսակցությունը մեծ նշանակություն է տալիս անհատի բարձր քաղաքացիականության, սովետական օրենքների և սոցիալիստական համակեցության կանոնների նկատմամբ հարգանքի, սոցիալիստական օրինականության ամեն տեսակ խախտումների նկատմամբ անհաշտ վերաբերմունքի, իրավակարգի պահպանությանը ակտիվորեն մասնակցելու պատրաստակամության դաստիարակությանը:

**Աթեիստական դաստիարակություն:** Կուսակցությունը գաղափարական ներգործության միջոցներն օգտագործում է գիտամատերիալիստական աշխարհընկալման լայն տարածման համար, կրոնական նախապաշարմունքների հաղթահարման համար, թույլ չտալով հավատացյալների զգացմունքների վիրավորում: Հանդես գալով խղճի ազատության սահմանադրական երաշխիքների անշեղ կատարման օգտին, կուսակցությունը դատապարտում է կրոնը ի վնաս հասարակության և անհատի շահերի օգ-

տագործելու փորձերը: Աթեիստական դաստիարակության կարևոր բաղկացուցիչ մասը մարդկանց աշխատանքային և հասարակական ակտիվության բարձրացումն է, նրանց լուսավորումը, սովետական նոր ծեսերի և սովորույթների լայն տարածումը:

Կոմունիստական դաստիարակության աշխատանքը անբաժանելի է **խորթ գաղափարախոսության ու բարոյականության դրսևորումների, այն բոլոր բացասական երևույթների դեմ մղվող պայքարից**, որոնք կապված են մարդկանց գիտակցության ու վարքագծի մեջ անցյալի վերապրուկների, հասարակական կյանքի տարբեր բնագավառներում գործնական աշխատանքի թերությունների հետ, հասունացած պրոբլեմների լուծման հապաղման հետ: Կուսակցությունը առաջնահերթ նշանակություն է տալիս աշխատանքային կարգապահության խախտումները, հափշտակումներն ու կաշառակերությունը, սպեկուլյացիան ու պորտաբուծությունը, հարբեցողությունն ու խուլիգանությունը, մասնավոր սեփականատիրական հոգեբանությունն ու ընչաքաղցությունը, քծնանքն ու շողոքորթությունը հետևողականորեն և հաստատակամորեն արմատախիլ անելուն: Այդ երևույթների դեմ մղվող պայքարում անհրաժեշտ է լրիվ օգտագործել հասարակական կարծիքի հեղինակությունը և օրենքի ուժը:

**Պայքար ընդդեմ բուրժուական գաղափարախոսության:** Միջազգային ասպարեզում երկու աշխարհայացքների անչափ սուր պայքարը արտացոլում է համաշխարհային երկու սիստեմների՝ սոցիալիզմի ու կապիտալիզմի հակադրությունը: ՍՄԿԿ-ն իր խնդիրը համարում է այն, որ ժողովուրդներին հասցնի ճշմարտությունը ռեալ սոցիալիզմի, Սովետական Միության ներքին ու արտաքին քաղաքականության մասին, ակտիվորեն պրոպագանդի սովետական ապրելակերպը, հարձակողաբար, փաստարկված բացահայտի իմպերիալիզմի հակաժողովրդական, անմարդկային բնույթը, նրա շահագործողական էությունը: Կուսակցությունը սովետական մարդկանց մեջ կդաստիարակի քաղաքական բարձր գիտակցականություն և զգոնություն, դասակարգային հստակ դիրքերից հասարակական երևույթները գնահատելու, սոցիալիզմի իդեալներն ու հոգևոր արժույթները պաշտպանելու ունակություն:

Հասարակության կյանքում ուժեղանում է **մասսայական ինֆորմացիայի և պրոպագանդայի միջոցների** դերը: ՍՄԿԿ-ն կձգտի այն բանին, որ դրանք խորապես վերլուծեն ներքին ու միջազգային կյանքի միտումներն ու երևույթները, տնտեսական ու սոցիալական պրոցեսները, ակտիվորեն պաշտպանեն ամենայն նորը, առաջավորը, բարձրացնեն հրատապ, մարդկանց հուզող պրոբլեմներ և առաջարկեն դրանց լուծման ուղիներ: Մամուլի, հեռուստատեսության և ռադիոհաղորդումների աշխատանքը պետք է աչքի ընկնի ելույթների քաղաքական պարզությամբ ու նպատակասլացությամբ, բովանդակության խորությամբ, օպերատիվությամբ, ինֆորմացիոն հագեցվածությամբ, ցայտունությամբ ու մատչելիությամբ: Կուսակցությունը այսուհետև էլ ակտիվ աջակցություն ու օգնություն ցույց կտա մամուլին, մասսայական ինֆորմացիայի և պրոպագանդայի բոլոր միջոցներին:

Առանձնակի ուշադրություն կնվիրվի հեռուստատեսության զարգացմանը, ռադիոհեռուստատեսային ծրագրերով բնակչության ընդգրկման համակողմանի ընդլայնմանը, հաղորդումների բովանդակալիության, գաղափարագեղարվեստական մակարդակի և գրավչության բարձրացմանը:

Գաղափարադաստիարակչական և պրոպագանդիստական աշխատանքում անհրաժեշտ է վճռականորեն արմատախիլ անել պարադայնության, դատարկախոսության, ֆորմալիզմի դրսևորումները: Այդ աշխատանքի բոլոր ձևերն ու միջոցները պետք է օգնեն երկրի առջև կանգնած խնդիրների կատարման համար մասսաների մոբիլիզացմանը, ապահովելով կուսակցական, պետական մարմինների, հասարակական կազմակերպությունների աշխատանքի լայն հրապարակայնություն, մարդկանց հետ հաղորդակցվելու շիտակություն և անկեղծություն, հասարակական կարծիքի ճիշտ ձևավորում ու պրակտիկ գործերի վրա դրա ազդեցության աճ: ՍՄԿԿ-ն մշտապես հոգ կտանի գաղափարախոսական աշխատանքի նյութական բազայի ամրապնդման մասին:

## Ժողովրդական կրթության բնագավառում

Կուսակցությունը հետևողականորեն **վարում է գիտակից, բարձրակիրթ մարդկանց** դաստիարակության ու պատրաստման գիծը, որոնք ընդունակ լինեն ինչպես



ֆիզիկական, այնպես էլ մտավոր աշխատանքի, ժողովրդական տնտեսության մեջ, հասարակական ու պետական կյանքի տարբեր բնագավառներում, գիտության ու մշակույթի ոլորտում ակտիվ գործունեության: ՍՍՀՄ-ում ստեղծված հիրավի ժողովրդական դպրոցը բոլոր քաղաքացիների համար գիտելիքներ ստանալու հնարավորություններ է ապահովել, թույլ է տվել պատմականորեն կարճ ժամանակամիջոցում վերացնել մասսայական անգրագիտությունը և անցնել ընդհանուր միջնակարգ կրթության:

**ՍՄԿԿ-ն կշարունակի կատարելագործել ժողովրդական կրթության համակարգը, հաշվի առնելով սոցիալ-տնտեսական զարգացումն արագացնելու պահանջմունքները, կոմունիստական շինարարության հեռանկարները, այն պահանջները, որ ներկայացնում է գիտության ու տեխնիկայի առաջընթացը:** Երկրում իրականացվող հանրակրթական և պրոֆեսիոնալ դպրոցի ռեֆորմը հիմնվում է միասնական աշխատանքային պոլիտեխնիկական դպրոցի լենինյան սկզբունքների ստեղծագործական զարգացման վրա և նպատակամղված է այն բանին, որ է՛լ ավելի բարձրացվի երիտասարդության կրթության ու դաստիարակության մակարդակը, բարելավվի ինքնուրույն աշխատանքային կյանքին նրա նախապատրաստությունը, աստիճանական անցում կատարվի դեպի ընդհանուր պրոֆեսիոնալ կրթություն: Դպրոցը կոչված է սովորողներին պատվաստել հայրենիքի հանդեպ սիրո զգացում, կոլեկտիվիզմ, մեծերի, ծնողների ու ուսուցիչների հանդեպ հարգանք, աճող սերնդին դաստիարակել ուսման և աշխատանքի որակի, իրենց վարքագծի համար բարձր պատասխանատվության ոգով, զարգացնել աշակերտական ինքնակառավարումը: Նախատեսված միջոցառումների իրականացման ընթացքում տեղի կունենան պրոֆեսիոնալ և հանրակրթական դպրոցի հետագա զարգացում ու մերձեցում, իսկ հեռանկարում՝ միաձուլում:

Գիտատեխնիկական և սոցիալական առաջադիմության պահանջներին համապատասխան հետագա զարգացում կստանա միջնակարգ մասնագիտական ու բարձրագույն կրթության համակարգը: Այն պետք է զգայուն կերպով ու ժամանակին արձագանքի արտադրության, գիտության ու մշակույթի պահանջներին, ապահովի ժողովրդական տնտեսության այնպիսի մասնագետների պահանջմունքները, որոնք զուգորդեն պրոֆեսիոնալ բարձր պատրաստությունը, գաղափարաքաղաքական հասունությունը, կազմակերպչական, կառավարչական գործունեության հմտությունները: Կուսակցությունը մեծ նշանակություն է տալիս որակավորման բարձրացման համակարգի զարգացմանը, որը հեռակա ու երեկոյան ուսուցման հետ միասին բոլոր աշխատավորների համար բարենպաստ հնարավորություններ կստեղծի կրթության շարունակման, գիտելիքների անընդհատ ընդլայնման ու նորացման, նրանց ընդհանուր կուլտուրայի և պրոֆեսիոնալ մակարդակի մշտական աճի համար:

Կուսակցությունը անդուլ կերպով հոգ կտանի մանկավարժական կադրերի, կրթության ամբողջ համակարգի նյութական բազայի ամրապնդման ու զարգացման մասին:

## Գիտության բնագավառում

Արտադրողական ուժերի զարգացման և հասարակական հարաբերությունների կատարելագործման, տեխնիկայի ու տեխնոլոգիայի սկզբունքորեն նոր տեսակների ստեղծման, աշխատանքի արտադրողականության բարձրացման, երկրի ընդերքի, օվկիանոսի, տիեզերքի յուրացման, շրջակա միջավայրի պահպանության և բարելավման գործում հարաճուն դեր է խաղում գիտությունը:

**Գիտության բնագավառում կուսակցության քաղաքականությունը նպատակամղված է գիտելիքների բոլոր ճյուղերի դինամիկ առաջընթացի համար նպաստավոր պայմանների ստեղծմանը, այն առավել հեռանկարային ուղղություններում կադրերի, նյութական ու ֆինանսական ռեսուրսների համակենտրոնացմանը, որոնք կոչված են արագացնել տնտեսական ու սոցիալական նախատեսված նպատակների ձեռքբերումը, հասարակության հոգևոր զարգացումը, ապահովել երկրի հուսալի պաշտպանունակությունը:**

Բնագիտական ու սոցիալական գիտելիքների սկզբունքային, ստուգված հիմքը եղել և մնում է դիալեկտիկական-մատերիալիստական մեթոդաբանությունը: Այն

հարկավոր է այսուհետև էլ ստեղծագործաբար զարգացնել, հմտորեն կիրառել հե-
տազոտական աշխատանքում և հասարակական կյանքում:

Սովետական գիտությունը կոչված է առաջատար դիրքեր գրավել գիտատեխնի-
կական առաջադիմության հիմնական ուղղություններում, հայտնաբերել ընթացիկ և
հեռանկարային արտադրական ու սոցիալ-տնտեսական պրոբլեմների լուծման ար-
դյունավետ և ժամանակին գտնված լուծումներ: Կարևոր է ապահովել որոնողական,
հիմնարար հետազոտությունների առաջանցիկ զարգացում, հասնել ժողովրդական
տնտեսության մեջ և մարդկային գործունեության այլ բնագավառներում գիտական
գաղափարների շոշափելի նյութականացմանը: Պետք է մշտապես կատարելագործ-
վեն գիտության և արտադրության ինտեգրացման, գիտատեխնիկական առաջադի-
մության կառավարման կազմակերպական-տնտեսական ձևերը, ընդլայնվեն հրատապ
կիրառական հետազոտությունները և փորձնակոնստրուկտորական մշակումները,
բարձրացվի դրանց արդյունավետությունը: Անհրաժեշտ է հետևողականորեն ամրա-
պնդել ակադեմիական, բուհական ու ճյուղային գիտության փոխգործողությունը:

Հասարակագետների ուշադրությունը պետք է կենտրոնացնել համաշխարհային
զարգացման, ՍՍՀՄ-ում, սոցիալիստական մյուս երկրներում նոր հասարակության
ստեղծման փորձի, սոցիալիզմի պայմաններում արտադրողական ուժերի և արտա-
դրական հարաբերությունների դիալեկտիկայի, նյութական ու հոգևոր ոլորտների,
կոմունիստական ֆորմացիայի ձևավորման օրինաչափությունների, դեպի նրա բարձ-
րագույն փուլ աստիճանական առաջընթացի ուղիների ու միջոցների ուսումնասիրման
և բազմակողմանի վերլուծության վրա: Սոցիալիստական հասարակության օբյեկտիվ
հակասությունների գիտական վերլուծությունը, դրանց լուծման հիմնավորված հանձ-
նարարականների, տնտեսական ու սոցիալական հուսալի կանխատեսումների մշա-
կումը զարգացման արդի փուլում հասարակական գիտությունների անհետաձգելի
խնդիրն են:

Խոր ուսումնասիրման կարիք ունեն կոմունիստական, բանվորական, ազգային-
ազատագրական շարժումներում, կապիտալիստական հասարակության մեջ տեղի
ունեցող պրոցեսները: Համաշխարհային զարգացման ընթացքը մարդկության առջև
համընդհանուր մասշտաբի քիչ հարցեր չի դնում: Գիտական միտքը պետք է ճիշտ
պատասխան տա այդ հարցերին: Հասարակական գիտության կարևոր խնդիրը եղել
և մնում է պայքարն ընդդեմ բուրժուական գաղափարախոսության, ռևիզիոնիզմի և
դոգմատիզմի:

Կուսակցությունը սատարում է համարձակ որոնումը, գաղափարների և ուղղու-
թյունների մրցությունը գիտության մեջ, արգասավոր բանավեճերը: Գիտությանը հա-
կացուցված են ինչպես սխոլաստիկ դատողությունները, այնպես էլ տեսական հա-
մարձակ ընդհանրացումներից խույս տվող փաստերի պասսիվ գրանցումը, կոնյունկ-
տուրականությունը, իրականությունից կտրվածությունը: Ժամանակակից պրոբլեմների
բարդ, կոմպլեքսային բնույթը պահանջում է խորացնել հասարակական, բնական ու
տեխնիկական գիտությունների ինտեգրացումը: Պետք է ավելի լայն զարգացում
ստանան գիտության կազմակերպման այնպիսի ձևեր, որոնք ապահովում են հրա-
տապ պրոբլեմների գիտական միջճյուղային հետազոտությունը, գիտական կադրերի
անհրաժեշտ շարժունությունը, գիտական հիմնարկների կառուցվածքի ճկունությունը,
հետազոտությունների ու մշակումների արդյունավետությունը: Հարկավոր է բարձ-
րացնել դրանց դերը տնտեսական ու սոցիալական զարգացման պլաններ կազմելիս
և իրականացնելիս: Գիտության առաջընթացի պարտադիր պայմանը թարմ ուժերի
մշտական հոսքն է, այդ թվում՝ արտադրության ոլորտից, գիտնականների ստեղծա-
գործական հնարավորությունների հմուտ օգտագործումը, նրանց աշխատանքի խթա-
նումը՝ ելնելով տեսական ու կիրառական պրոբլեմների մշակման գործում նրանց ներ-
դրած ռեալ ավանդից:

## Կուլտուրական շինարարության, գրականության և արվեստի բնագավառում

Միջազգային ճանաչման արժանացած հիրավի ժողովրդական բազմազգ սովե-
տական կուլտուրայի ստեղծումը մեր կարգերի պատմական նվաճումն է: Նրա հզոր



ազդեցության աղբյուրներն են՝ հավատարմությունը կյանքի ճշմարտությանը, սոցիա-
լիզմի ու կոմունիզմի իդեալներին, մարդասիրությունն ու լավատեսությունը, ժողո-
վրդի հետ սերտ կապը:

**ՍՄԿԿ-ն մեծ նշանակություն է տալիս աշխատավոր զանգվածների կողմից հո-
գևոր և նյութական կուլտուրայի հարստությունների ավելի լրիվ ու խոր յուրացմանը,
գեղարվեստական ստեղծագործությանը նրանց ակտիվ հաղորդակցմանը:** Հետևողա-
կանորեն առաջնորդվելով կուլտուրական շինարարության լենինյան սկզբունքներով,
կուսակցությունը հոգ կտանի հայրենական և համաշխարհային գեղարվեստական
մշակույթի լավագույն նմուշների ոգով աշխատավորների, մատաղ սերնդի գեղագի-
տական դաստիարակության մասին:

Գեղագիտական սկզբունքը է՛լ ավելի կոգեշնչի աշխատանքը, կվեհացնի մար-
դուն, կգեղեցկացնի նրա կենցաղը:

Մշակույթի ոլորտը կոչված է բավարարել բնակչության տարբեր կատեգորիա-
ների աճող պահանջմունքները, անհրաժեշտ հնարավորություններ ապահովել ժողո-
վրդի ինքնագործ գեղարվեստական ստեղծագործության համար, զարգացնել ըն-
դունակությունները, հարստացնել սոցիալիստական ապրելակերպը, ձևավորել առողջ
պահանջմունքներ և գեղագիտական բարձր ճաշակ: Այդ խնդիրների հաջող լուծման
պարտադիր պայմանը կուսակցությունը համարում է կուլտուր-լուսավորական աշ-
խատանքի բովանդակության ու մեթոդների մշտական կատարելագործումը, դրա
նյութական բազայի ամրապնդումը, գյուղում և նոր յուրացվող շրջաններում կուլտու-
րական ինտենսիվ շինարարությունը:

**Կուսակցությունը ըստ ամենայնի կնպաստի գրականության և արվեստի դերի
բարձրացմանը:** Դրանք կոչված են ծառայելու ժողովրդի շահերին, կոմունիզմի գոր-
ծին, լինելու միլիոնավոր մարդկանց համար բերկրանքի ու ոգեշնչման աղբյուր, ար-
տահայտելու նրանց կամքը, զգացումներն ու մտքերը, ակտիվորեն օգնելու նրանց
գաղափարական հարստացմանն ու բարոյական դաստիարակությանը:

Գրականության և արվեստի զարգացման գլխավոր գիծը ժողովրդի կյանքի հետ
կապի ամրապնդումն է, սոցիալիստական իրականության ճշմարտացի և գեղարվե-
ստորեն բարձր արտացոլումը, նորի, առաջավորի ոգեշունչ ու ցայտուն բացահայտու-
մը և այն ամենի կրքոտ մերկացումը, ինչը խանգարում է հասարակության առաջըն-
թացին:

Սոցիալիստական ռեալիզմի արվեստը հիմնված է ժողովրդայնության և կուսակ-
ցականության սկզբունքների վրա: Այն կյանքի ճշմարտացի գեղարվեստական վե-
րարտադրության մեջ համարձակ նորարարությունը զուգորդում է հայրենական և
համաշխարհային կուլտուրայի բոլոր առաջադիմական ավանդույթների օգտագործման
և զարգացման հետ: Գրականության և արվեստի գործիչների առջև իրոք ազատորեն
ստեղծագործելու, վարպետությունը բարձրացնելու, բազմապիսի ռեալիստական ձև-
երը, ոճերն ու ժանրերը է՛լ ավելի զարգացնելու լայն ասպարեզ է բացված: Ժողո-
վրդի կուլտուրական մակարդակի աճի համեմատ ուժեղանում է արվեստի ազդեցու-
թյունը հասարակության կյանքի, նրա բարոյահոգեբանական կլիմայի վրա: Դա բարձ-
րացնում է մշակույթի վարպետների պատասխանատվությունը ստեղծագործության
գաղափարական ուղղվածության, նրանց ստեղծագործությունների ներգործության
գեղարվեստական ուժի համար:

ՍՄԿԿ-ն հոգատարությամբ, հարգանքով է վերաբերվում տաղանդին, գեղար-
վեստական որոնմանը: Միևնույն ժամանակ, հենվելով ստեղծագործական միություն-
ների, հասարակական կարծիքի, մարքս-լենինյան գեղարվեստական քննադատության
վրա, նա միշտ պայքարել է և կպայքարի ընդդեմ գաղափարազրկության և աշխար-
հայեցողական անխտրողականության, գեղագիտական գռեհկության դրսևորումների:

Սովետական կուլտուրան օգնում է ժողովուրդների փոխըմբռնմանն ու մերձեց-
մանը, ակտիվորեն մասնակցում իմպերիալիզմի, ռեակցիայի ու պատերազմի դեմ
մղվող պայքարին: Մարմնավորելով սոցիալիստական հասարակության գաղափարա-
կան հարստությունն ու հոգևոր կյանքի բազմազանությունը, նրա ռեալ մարդասիրու-
թյունը, նա հարստացնում է համաշխարհային կուլտուրան, իրեն ավելի ու ավելի
լրիվ է դրսևորում որպես մարդկության հոգևոր առաջադիմության հզոր գործոն, որ-
պես կոմունիզմի գալիք կուլտուրայի նախատիպ:

# ԵՐՐՈՐԴ ՄԱՍ

# ՍՄԿԿ-Ի ԽՆԴԻՐՆԵՐԸ ՄԻՋԱԶԳԱՅԻՆ ԱՍՊԱՐԵԶՈՒՄ, ԽԱՂԱՂՈՒԹՅԱՆ ԵՎ ՍՈՑԻԱԼԱԿԱՆ ԱՌԱՋԱԴԻՄՈՒԹՅԱՆ ՊԱՅՔԱՐՈՒՄ

ՍՄԿԿ-ի միջազգային քաղաքականությունը բխում է սոցիալիստական հասարակության մարդասիրական բնույթից, որը զերծ է շահագործումից ու ճնշումից, չունի պատերազմների սանձազերծմամբ շահագրգռված դասակարգեր ու սոցիալական խմբեր: Այն անխզելիորեն կապված է երկրի ներսում կուսակցության արմատական, ստրատեգիական խնդիրների հետ և արտահայտում է սովետական ժողովրդի միահամուռ ձգտումը՝ զբաղվելու ստեղծարար աշխատանքով, հաշտ ու խաղաղ ապրելու բոլոր ժողովուրդների հետ:

**ՍՄԿԿ-ի միջազգային քաղաքականության գլխավոր նպատակները և ուղղությունները.**

— նպաստավոր արտաքին պայմանների ապահովումը ՍՍՀՄ-ում սոցիալիստական հասարակությունը կատարելագործելու և դեպի կոմունիզմ առաջ ընթանալու համար, համաշխարհային պատերազմի սպառնալիքի վերացումը, ընդհանուր անվտանգության ու զինաթափման ձեռքբերումը.

— եղբայրական սոցիալիստական երկրների հետ ՍՍՀՄ-ի համագործակցության անշեղ ընդլայնումն ու խորացումը, սոցիալիզմի համաշխարհային սիստեմի ամրապնդմանն ու առաջընթացին ըստ ամենայնի նպաստումը.

— ազատագրված երկրների հետ իրավահավասար, բարեկամական հարաբերությունների զարգացումը.

— խաղաղ գոյակցության, գործարար, փոխշահավետ համագործակցության հիման վրա կապիտալիստական պետությունների հետ ՍՍՀՄ-ի հարաբերությունների պահպանումն ու զարգացումը.

— ինտերնացիոնալ համերաշխությունը կոմունիստական և հեղափոխական-դեմոկրատական կուսակցությունների հետ, միջազգային բանվորական շարժման, ժողովուրդների ազգային-ազատագրական պայքարի հետ:

Արտաքին քաղաքականության պրոբլեմների նկատմամբ ՍՄԿԿ-ի մոտեցումը զուգակցում է սովետական ժողովրդի շահերի հաստատակամ պաշտպանությունը, իմպերիալիզմի ագրեսիվ քաղաքականությանը վճռականորեն հակազդելը, երկխոսության, բանակցությունների միջոցով միջազգային հարցերի կոնստրուկտիվ լուծման պատրաստակամությունը:

Կուսակցության մշակած և սովետական պետության կողմից հետևողականորեն իրագործվող խաղաղասիրական արտաքին քաղաքական կուրսը՝ զուգակցվելով երկրի պաշտպանունակության ամրապնդման հետ, սովետական ժողովրդի, մոլորակի բնակչության մեծամասնության համար խաղաղ կյանք ապահովեց XX դարի ամենատևական ժամանակամիջոցի ընթացքում: ՍՄԿԿ-ն այսուհետև էլ իրենից կախված ամեն ինչ կանի սովետական մարդկանց ստեղծարար աշխատանքի խաղաղ պայմանները պահպանելու, միջազգային հարաբերություններն առողջացնելու, աշխարհն ընդգրկած սպառազինությունների մրցավազքը դադարեցնելու, ժողովուրդների վրա կախված միջուկային պատերազմի վտանգը վանելու համար:

Չկա ավելի վեհ ու պատասխանատու առաքելություն, քան խաղաղությունը պաշտպանելն ու ամրապնդելը, ագրեսիայի և միլիտարիզմի ուժերը սանձահարելը՝ հանուն ներկա և գալիք սերունդների կյանքի: **Պատերազմներից, զենքից զերծ աշխարհը սոցիալիզմի իդեալն է:**



# I. Համագործակցությունը սոցիալիստական երկրների հետ

ՍՄԿԿ-ն առաջնահերթ նշանակություն է տալիս Սովետական Միության և մյուս սոցիալիստական երկրների բարեկամական կապերի հետագա զարգացմանն ու ամրապնդմանը:

**Կուսակցությունը ձգտում է համաշխարհային սոցիալիստական սիստեմի բոլոր պետությունների հետ ՍՍՀՄ-ի ընկերական ամուր հարաբերություններին և բազմակողմանի համագործակցությանը:** ՍՄԿԿ-ն ելնում է այն բանից, որ սոցիալիզմի երկրների համախմբվածությունը համապատասխանում է նրանցից յուրաքանչյուրի շահերին և նրանց ընդհանուր շահերին, ծառայում խաղաղության գործին, սոցիալիստական իդեալների հաղթանակին:

Կուսակցության առանձնակի հոգատարության առարկան են սոցիալիստական ընկերակցության երկրների հետ Սովետական Միության բարեկամության ըստ ամենայնի ամրապնդումը, կապերի զարգացումն ու կատարելագործումը:

Նրանց բազմակողմանի համագործակցության շարժիչ ուժը կառավարող կոմունիստական ու բանվորական կուսակցություններն են: Եղբայրական երկրների կոմունիստների համախմբվածությունն ամրապնդելու, հասարակության ղեկավարման պրակտիկան փոխադարձաբար հարստացնելու նպատակով ՍՄԿԿ-ն այսուհետև էլ կնպաստի միջկուսակցական կապերի ընդլայնմանը, որոնք ընդգրկում են կուսակցությունների բոլոր օղակները՝ կենտրոնական կոմիտեներից մինչև սկզբնական կուսակցական կազմակերպությունները, կնպաստի կարծիքների ու փորձի փոխանակմանը ինչպես երկկողմ, այնպես էլ բազմակողմ հիման վրա:

ՍՄԿԿ-ն կշարունակի Սովետական Միության և սոցիալիզմի երկրների միջպետական հարաբերությունները ամրապնդելու, դրանք պայմանագրային կարգով հաստատելու, օրենսդրական մարմինների, հասարակական կազմակերպությունների կոնտակտները զարգացնելու, քաղաքական համագործակցության բոլոր ձևերը է՛լ ավելի ակտիվացնելու գիծը:

Սովետական կոմունիստները հանդես են գալիս միջազգային ասպարեզում եղբայրական երկրների ավելի ու ավելի արդյունավետ փոխգործողության օգտին՝ հաշվի առնելով նրանցից յուրաքանչյուրի իրավիճակն ու շահերը, ընկերակցության ընդհանուր շահերը:

Քանի դեռ գոյություն ունի ՆԱՏՕ-ի իմպերիալիստական ռազմական դաշինքը, այդ պայմաններում կուսակցությունը անհրաժեշտ է համարում ըստ ամենայնի նպաստել Վարշավայի պայմանագրի կազմակերպության գործունեության կատարելագործմանը՝ որպես իմպերիալիզմի ագրեսիվ նկրտումների դեմ կոլեկտիվ պաշտպանության, կայուն խաղաղության և միջազգային համագործակցության ընդլայնման համար համատեղ պայքարի գործիքի:

Տնտեսական փոխհարաբերությունների բնագավառում ՍՄԿԿ-ն հանդես է գալիս սոցիալիստական տնտեսական ինտեգրացման՝ որպես սոցիալիզմի երկրների համախմբման նյութական հիմքի հետագա խորացման օգտին: Նա հատուկ նշանակություն է տալիս արտադրության ինտենսիվացման և գիտատեխնիկական առաջադիմության արագացման գլխավոր ուղղություններում եղբայրական երկրների ջանքերի հետևողական միավորմանը համատեղ լուծելու գիտությունը և տեխնիկան առաջավոր բնագծեր դուրս բերելու պատմական կարևորության խնդիրը՝ իրենց ժողովուրդների բարեկեցության հետագա աճի, նրանց անվտանգության ապահովման նպատակով:

Կուսակցությունը ելնում է նրանից, որ ինտեգրացումը կոչված է հարանուն կերպով նպաստելու հանրային արտադրության և սոցիալիստական ապրելակերպի առաջընթացին ընկերակցության երկրներում, նրանց տնտեսական զարգացման մակարդակները հավասարեցնելու պրոցեսի արագացմանը, աշխարհում սոցիալիզմի դիրքերի ամրապնդմանը:

ՍՄԿԿ-ն ակտիվորեն կմասնակցի տնտեսական քաղաքականությունը համաձայնեցնելու, տնտեսական փոխգործողության մեխանիզմը կատարելագործելու, դրա նոր ձևեր որոնելու, արտադրության մասնագիտացումն ու կոոպերացումը խորացնելու,

տական Միությունը այդ ուղեգծով ընթացող ժողովուրդներին իր հնարավորությունների համեմատ օգնություն է ցույց տվել և ցույց կտա տնտեսական ու մշակութային շինարարության, ազգային կադրերի պատրաստման, պաշտպանունակության բարձրացման և այլ բնագավառներում:

ՍՄԿԿ-ն խորացնում է հարաբերությունները ազատագրված երկրների **հեղափոխական-դեմոկրատական կուսակցությունների հետ:** Առանձնապես սերտ համագործակցություն է հաստատվել այդ երկրներից նրանց հետ, որոնք ձգտում են իրենց գործունեությունը կառուցել գիտական սոցիալիզմի հիմքի վրա: ՍՄԿԿ-ն կողմնակից է զարգացնելու կապերը բոլոր ազգային առաջադիմական կուսակցությունների հետ, որոնք հակաիմպերիալիստական և հայրենասիրական դիրքորոշումներ ունեն:

Ազատագրված երկրների հետ ՍՍՀՄ-ի հարաբերությունների պրակտիկան ցույց է տվել, որ իրական հող գոյություն ունի նաև այն երիտասարդ պետությունների հետ համագործակցելու համար, որոնք ընթանում են կապիտալիստական ուղիով: Դա ընդհանուր շահագրգռվածությունն է խաղաղության պահպանմամբ, միջազգային անվտանգության ամրապնդմամբ և սպառազինությունների մրցավազքի դադարեցմամբ: Դա ժողովուրդների շահերի և իմպերիալիստական թելադրանքի ու բռնապետանցման քաղաքականության միջև սրված հակասություններն են: Դա այն փաստի ըմբռնումն է երիտասարդ պետությունների կողմից, որ Սովետական Միության հետ քաղաքական ու տնտեսական կապերը նպաստում են իրենց անկախության ամրապնդմանը:

Որքան էլ որ տարբերվեն ազատագրված երկրները, ինչ ուղիով էլ որ նրանք ընթանան, նրանց ժողովուրդներին միավորում է ինքնուրույն զարգանալու, իրենց գործերը առանց օտարերկրյա միջամտության տնօրինելու ցանկությունը: Սովետական Միությունը ամբողջովին համերաշխ է նրանց հետ: ՍՄԿԿ-ի համար անվիճելի է, որ ազատագրված երկրների ճակատագրերի տնօրինումը, հասարակարգի ընտրությունը նրանց սրբազան իրավունքն են:

ՍՄԿԿ-ն հանդես է գալիս ի պաշտպանություն Ասիայի, Աֆրիկայի և Լատինական Ամերիկայի երկրների արդար պայքարի, ընդդեմ իմպերիալիզմի ու վերազգային մոնոպոլիաների ճնշման, հանուն սեփական ռեսուրսները տնօրինելու սուվերեն իրավունքի հաստատման, հանուն իրավահավասար, դեմոկրատական հիման վրա միջազգային հարաբերությունների վերակառուցման, հանուն նոր միջազգային տնտեսակարգի ստեղծման, հանուն իմպերիալիստների պարտադրած պարտքային ստրկության վերացման:

Սովետական Միությունը կանգնած է այն պետությունների և ժողովուրդների կողմը, որոնք կասեցնում են իմպերիալիզմի ագրեսիվ ուժերի գրոհները, պաշտպանում են իրենց ազատությունը, անկախությունը և ազգային արժանապատվությունը: Նրանց հետ համերաշխությունը մեր ժամանակներում նաև խաղաղության ու միջազգային անվտանգության ընդհանուր պայքարի կարևոր մասն են: Կուսակցությունն իր ինտերնացիոնալ պարտքն է համարում զորավիգ լինել այն ժողովուրդների պայքարին, որոնք տակավին գտնվում են ռասիզմի լծի տակ և ապարտեիդի սիստեմի զոհերն են:

ՍՄԿԿ-ն ըմբռնումով է վերաբերվում չմիանալու շարժման նպատակներին ու գործունեությանը, հանդես է գալիս համաշխարհային քաղաքականության մեջ դրա դերի բարձրացման օգտին: ՍՍՀՄ-ը այսուհետև էլ կլինի չմիացած պետությունների կողմը՝ ագրեսիայի և հեգեմոնիզմի ուժերի դեմ մղվող պայքարում, հանդես կգա ծագող վեճերն ու կոնֆլիկտները բանակցությունների միջոցով հաղթահարելու օգտին, այդ պետություններին ռազմաքաղաքական խմբավորումների մեջ ներքաշելու դեմ:

ՍՄԿԿ-ն կողմնակից է ազատագրված երկրների լիիրավ մասնակցությանը միջազգային գործերին, նրանց ներդրման մեծացմանը արդիականության կարևորագույն պրոբլեմների լուծման գործում: Սոցիալիստական պետությունների հետ այդ երկրների փոխգործողությունը հսկայական նշանակություն ունի ժողովուրդների անկախության ամրապնդման, միջազգային հարաբերությունների առողջացման, խաղաղության պահպանման համար:

**Սոցիալական առաջադիմության և ազգային ազատագրության ուժերի դաշինքը մարդկության լավագույն ապագայի երաշխիքն է:**



# III. Հարաբերությունները կապիտալիստական երկրների հետ: Պայքարը հանուն կայուն խաղաղության և զինաթափման

ՍՄԿԿ-ն ելնում է այն բանից, որ պատմական վեճը երկու հակադիր հասարակական սիստեմների միջև, որոնցով բաժանված է ժամանակակից աշխարհը, կարող է և պետք է լուծվի խաղաղ ճանապարհով: Իր առավելությունները սոցիալիզմը ապացուցում է ոչ թե զենքի ուժով, այլ օրինակի ուժով հասարակական կյանքի բոլոր բնագավառներում՝ տնտեսության, գիտության և կուլտուրայի դինամիկ զարգացմամբ, աշխատավորների կենսամակարդակի բարձրացմամբ, սոցիալիստական դեմոկրատիայի խորացմամբ:

Սովետական կոմունիստները համոզված են, որ սոցիալիզմին է պատկանում ապագան: Յուրաքանչյուր ժողովուրդ արժանի է ապրելու սոցիալական և ազգային ճնշումից ազատ հասարակության մեջ, իսկական իրավահավասարության և իսկական դեմոկրատիայի հասարակության մեջ: Շահագործումից և անարդարություններից իրեն ազատելը ճնշված և շահագործվող ժողովրդի սուվերեն իրավունքն է: Հեղափոխությունները հասարակական զարգացման, յուրաքանչյուր տվյալ երկրում դասակարգային պայքարի օրինաչափ արդյունքն են: ՍՄԿԿ-ն սկզբունքորեն անընդունելի է համարել և համարում հեղափոխության «արտահանումը», դրսից որևէ մեկին այն պարտադրելը: Բայց հակահեղափոխության «արտահանման» ամեն տեսակ ձևերը ևս հանդիսանում են ժողովուրդների կամքի ազատ արտահայտության, զարգացման ուղու ինքնուրույն ընտրության նրանց իրավունքի կոպիտ ոտնահարում: Սովետական Միությունը վճռականապես դիմակայում է պատմության ընթացքը բռնի կերպով կանգնեցնելու և այն շուռ տալու փորձերին:

Ժողովուրդների շահերը պահանջում են, որպեսզի միջպետական հարաբերությունները մտնեն խաղաղ մրցության և իրավահավասար համագործակցության հունը:

**Սովետական Միության կոմունիստական կուսակցությունը հաստատակամորեն և հետևողականորեն պաշտպանում է հասարակական տարբեր կարգ ունեցող պետությունների խաղաղ գոյակցության լենինյան սկզբունքը:** Խաղաղ գոյակցության քաղաքականությունը, ինչպես այն ըմբռնում է ՍՄԿԿ-ն, ենթադրում է. հրաժարում պատերազմից, ուժ գործադրելուց կամ ուժով սպառնալուց, որպես վիճելի հարցերի կարգավորման միջոց, դրանց լուծում բանակցությունների ուղիով. ներքին գործերին չմիջամտում և միմյանց օրինական շահերի հաշվառում. իրենց ճակատագիրը ինքնուրույնաբար տնօրինելու ժողովուրդների իրավունք. պետությունների սուվերենության, տարածքային ամբողջականության և նրանց սահմանների անխախտելիության անվերապահ հարգում. համագործակցություն լիակատար իրավահավասարության և փոխշահավետության հիման վրա. այն պարտավորությունների բարեխիղճ կատարում, որոնք բխում են միջազգային իրավունքի հանրաճանաչ նորմաներից ու սկզբունքներից, կնքված միջազգային պայմանագրերից:

Այսպիսին են այն ֆունդամենտալ հիմքերը, որոնց վրա Սովետական Միությունը կառուցում է իր հարաբերությունները կապիտալիստական պետությունների հետ: Դրանք վավերացված են ՍՍՀՄ սահմանադրությամբ:

ՍՄԿԿ-ն նպատակասլաց կերպով կնպաստի ամենուրեք միջազգային հարաբերություններում խաղաղ գոյակցության սկզբունքի, որպես համընդհանուր ճանաչում գտած և բոլորի կողմից պահպանվող միջպետական հարաբերությունների նորմայի հաստատմանը: Կուսակցությունը անթույլատրելի է համարում այդ հարաբերությունների ոլորտի վրա երկու սիստեմների միջև եղած գաղափարախոսական հակասությունների տարածումը:

Կուսակցությունը կձգտի հասնել միջազգային լարվածության թուլացման պրոցեսի զարգացման, այն դիտելով որպես անվտանգության համապարփակ և հուսալի

կայությունը թուլացնելու նպատակով Սովետական Միությունը հանդես է գալիս դրանց միջև փոխադարձաբար ուժ չգործադրելու և խաղաղ հարաբերություններ պահպանելու վերաբերյալ այնպիսի պայմանագրի կնքման օգտին, որը բաց լինի նաև մյուս բոլոր պետությունների համար:

Կուսակցությունը ջանքեր կգործադրի, կձգտի այն բանին, որպեսզի սպառազինությունների սահմանափակման, ռազմական սպառնալիքի կանխման հարցերը լուծվեն կողմերի հավասար և միատեսակ անվտանգության հիման վրա ազնիվ և խստիվ պահպանվող համաձայնությունների ուղիով, որպեսզի բացառվեն «ուժի դիրքից» բանակցություններ վարելու, սպառազինությունների ծավալման համար բանակցությունները որպես քողարկում օգտագործելու ամեն տեսակի փորձերը:

Սովետական պետությունը և նրա դաշնակիցները չեն ձգտում հասնելու ռազմական գերազանցության, բայց թույլ չեն տա նաև համաշխարհային ասպարեզում առաջացած ռազմաստրատեգիական հավասարակշռության խախտում: Դրա հետ մեկտեղ նրանք հետևողականորեն ձգտում են այն բանին, որպեսզի այդ հավասարակշռության մակարդակն անշեղորեն իջնի, որպեսզի երկու կողմերի սպառազինությունների թիվը կրճատվի, իսկ բոլոր ժողովուրդների անվտանգությունը ապահովված լինի:

**ՍՄԿԿ-ն հանդիսավորապես հայտարարում է. չկա այնպիսի մի զենք, որն արդյունավետ վերահսկողության կիրառմամբ փոխադարձ հիման վրա Սովետական Միությունը պատրաստ չլինի սահմանափակելու կամ արգելելու:**

ՍՍՀՄ-ը ոտնձգություն չի կատարում ոչ մի երկրի դեմ՝ լինի դա Արևմուտքում թե Արևելքում: Նա ոչ մեկին չի սպառնում, չի ձգտում հակամարտության ոչ մի պետության հետ, ցանկանում է հաշտ ապրել բոլոր երկրների հետ: Մեծ Հոկտեմբերի ժամանակներից ի վեր սովետական սոցիալիստական պետությունը բարձր է պահում ժողովուրդների միջև խաղաղության ու բարեկամության դրոշը: ՍՄԿԿ-ն առաջիկայում ևս կպահպանի հավատարմությունը լենինյան այդ դրոշին:

## IV. ՍՄԿԿ-ն համաշխարհային բանվորական և կոմունիստական շարժման մեջ

ՍՄԿԿ-ն միջազգային կոմունիստական շարժման բաղկացուցիչ մասն է: Նա սոցիալիստական հասարակության կատարելագործման և դեպի կոմունիզմ առաջընթացի ուղղությամբ իր գործունեությունը դիտում է որպես կարևորագույն ինտերնացիոնալ խնդիր, որի լուծումը համապատասխանում է համաշխարհային սոցիալիստական սիստեմի, միջազգային բանվոր դասակարգի, համայն մարդկության շահերին:

Կոմունիստները, որոնք մշտապես եղել են սոցիալական և ազգային ճնշման դեմ պայքարող ամենահետևողական մարտիկները, ներկայումս գտնվում են նաև աշխարհում խաղաղության պահպանման, մարդկանց կյանքի իրավունքի համար մղվող պայքարի առաջավոր գծում: Նրանք լավ են հասկանում ռազմական սպառնալիքի պատճառները, մերկացնում են միջազգային լարվածության սրման, սպառազինությունների մրցավազքի իսկական մեղավորներին, ձգտում են համագործակցել բոլոր նրանց հետ, ովքեր ընդունակ են իրենց բաժինը ներդնելու հակապատերազմական պայքարի մեջ:

ՍՄԿԿ-ն հաշվի է առնում, որ ոչ սոցիալիստական աշխարհի կոմունիստական և բանվորական կուսակցությունները գործում են բարդ և հակասական իրադրության մեջ: Բավականին լայն է նրանց պայքարի պայմանների և ձևերի ընդգրկումը: Բայց դա չի նեղացնում, այլ, ընդհակառակը, ընդլայնում է շարժման հնարավորությունները: Նրանց գործունեության ձևերի բազմազանությունը կոմունիստներին թույլ է տալիս ավելի լավ հաշվի առնել ազգային առանձնահատկությունը և կոնկրետ պատմական իրադրությունը, բնակչության սոցիալական տարբեր խմբերի և խավերի շահերը:



ՍՄԿԿ-ն ելնում է այն բանից, որ յուրաքանչյուր երկրի կոմունիստները ինքնուրույն կերպով են վերլուծում և գնահատում իրադրությունը, անկախ կերպով են որոշում իրենց ստրատեգիական կուրսը, իրենց քաղաքականությունը, մերձավոր և վերջնական նպատակների, կոմունիստական իդեալների համար պայքարի այս կամ այն ուղիների ընտրությունը: Կոմունիստական կուսակցությունների կուտակած փորձը հանդիսանում է ինտերնացիոնալ արժեքավոր սեփականություն:

ՍՄԿԿ-ն ուշադրությամբ ուսումնասիրում է արտասահմանյան կոմունիստական կուսակցությունների պրոբլեմները և փորձը: Նա ըմբռնումով է վերաբերվում իրենց ստրատեգիան և տակտիկան կատարելագործելու, հակամոնոպոլիստական, հակապատերազմական գործողությունների պլատֆորմի վրա դասակարգային դաշինքների ընդլայնման հասնելու, աշխատավորների տնտեսական շահերը և քաղաքական իրավունքները պաշտպանելու նրանց ձգտմանը, ելնելով այն բանից, որ դեմոկրատիայի համար մղվող պայքարը հանուն սոցիալիզմի մղվող պայքարի բաղկացուցիչ մասն է:

Տարբեր երկրների իմպերիալիստական շրջանները սերտորեն կոորդինացնում են իրենց գործողությունները ընդդեմ սոցիալիզմի, բոլոր դեմոկրատական ուժերի, ձգտում են մի կոմունիստական կուսակցությունը հակադրել մյուսին: Այդ պայմաններում աճում է պրոլետարական ինտերնացիոնալիզմի, կոմունիստների ընկերական համերաշխության նշանակությունը:

ՍՄԿԿ-ն գտնում է, որ առանձին հարցերի շուրջ տարաձայնությունների առկայությունը չի կարող խանգարել կոմունիստական կուսակցությունների ինտերնացիոնալ համագործակցությանը, նրանց միասնական գործողություններին:

Այն դեպքերում, երբ եղբայրական կուսակցությունների միջև ծագում են տարակարծություններ առանձին պրոբլեմների շուրջ, ՍՄԿԿ-ն օգտակար է համարում անցկացնել ընկերական քննարկումներ միմյանց հայացքները ավելի լավ հասկանալու և փոխադարձաբար ընդունելի գնահատականներ մշակելու նպատակով: Իսկ երբ խոսք է գնում մարքսիզմ-լենինիզմի հեղափոխական բովանդակության, ռեալ սոցիալիզմի էության և դերի մասին, ՍՄԿԿ-ն այսուհետև նույնպես հանդես կգա սկզբունքային դիրքերից: Դրանով որոշվում է նաև ՍՄԿԿ-ի վերաբերմունքը կոմունիստների գործունեության դասակարգային իմաստը ամլացնելու, նպատակների հեղափոխական բնույթը և դրանց հասնելու պայքարի միջոցները խեղաթյուրելու ամեն տեսակի փորձերի նկատմամբ: Պրակտիկան ցույց է տալիս, որ Մարքսի—Էնգելսի—Լենինի ուսմունքի հիմունքներից շեղումները թուլացնում են կոմունիստական շարժման հնարավորությունները:

Եղբայրական կուսակցությունների հետ իր հարաբերություններում **ՍՄԿԿ-ն հաստատապես հետևում է պրոլետարական ինտերնացիոնալիզմի սկզբունքին**, որն օրգանապես իր մեջ ներառնում է ինչպես հեղափոխական համերաշխությունը, այնպես էլ յուրաքանչյուր կուսակցության լիակատար ինքնուրույնության և իրավահավասարության ճանաչումը: Այդ սկզբունքի հիման վրա ՍՄԿԿ-ն ակտիվորեն զարգացնում է կապերը կոմունիստական և բանվորական կուսակցությունների հետ՝ փոխանակելով ինֆորմացիա, մասնակցելով երկկողմ և բազմակողմ հանդիպումների, անհրաժեշտության բերումով անցկացվող ռեգիոնալ և ավելի լայն միջազգային խորհրդակցությունների:

Սովետական կոմունիստները մշտապես կապիտալի աշխարհի իրենց դասակարգային ընկերների կողմն են: ՍՄԿԿ-ն կօգտագործի իր միջազգային հեղինակությունը՝ պաշտպանելու հետադեմ ուժերի կամայականության զոհ դարձող կոմունիստներին: Նա բարձր է գնահատում եղբայրական կուսակցությունների համերաշխությունը, նրանց պայքարն ընդդեմ հակասովետիզմի: Սոցիալիստական և ոչ սոցիալիստական երկրների կոմունիստական ու բանվորական կուսակցությունների փոխադարձ աջակցությունը հասարակական առաջադիմության կարևոր գործոն է:

ՍՄԿԿ-ն կշարունակի սոցիալիստական, սոցիալ-դեմոկրատական, լեյբորիստական կուսակցությունների հետ կապերի զարգացման գիծը: Նրանց հետ համագործակցությունը կարող է զգալի դեր խաղալ նախ և առաջ միջուկային պատերազմի կանխման գործում: Որքան էլ խոր լինեն տարաձայնությունները բանվորական շարժման տարբեր հոսանքների միջև, դա չի կարող խոչընդոտ հանդիսանալ կարծիքների արգասաբեր և սիստեմատիկ փոխանակության համար, պատերազմի վտանգի դեմ զուգահեռ կամ համատեղ գործողությունների համար, հանուն միջազգային իրադրու-

տելու, մարդկանց նկատմամբ, նրանց կարիքների ու պահանջների նկատմամբ ուշադիր, զգայուն վերաբերմունք ցուցաբերելու կարողություն:

Պետական, տնտեսական և կուլտուրական շինարարության ղեկավարման մակարդակի բարձրացումը կուսակցությունն անխզելիորեն կապում է **կադրերի հետ տարվող աշխատանքի** հետագա **բարելավման հետ:** Նա անհրաժեշտ է համարում, որպեսզի ամենուրեք՝ վերից վար անշեղորեն պահպանվեն ըստ քաղաքական, գործնական և բարոյական հատկանիշների կադրերի ընտրության և գնահատման լենինյան սկզբունքները, առավել լրիվ հաշվի առնվի հասարակության կարծիքը:

Իր ամբողջ կադրային քաղաքականությամբ ՍՄԿԿ-ն կնպաստի ղեկավարման ասպարեզում կոմունիստների և անկուսակցականների շարքերից քաղաքականապես հասուն, բարձրաբարո, բանիմաց, ձեռներեց աշխատողների առաջ քաշելուն, ղեկավար աշխատանքի առավել ակտիվորեն կառաջադրի կանանց: Նա սկզբունքային նշանակություն է տալիս ղեկավարի այնպիսի հատկանիշներին, ինչպիսիք են նորի զգացումը, մարդկանց հետ սրտամոտությունը, պատասխանատվությունն իր վրա վերցնելու պատրաստակամությունը, ավելի լավ աշխատել սովորելու ցանկությունը, տնտեսավարման քաղաքական իմաստը հաշվի առնելու կարողությունը, իր և մյուսների նկատմամբ պահանջկոտությունը:

Կուսակցությունը հոգ է տանում, որպեսզի բոլոր տեղամասերում ավագ սերունդների փորձառու կադրերի հետ մեկտեղ ձեռք-ձեռքի աշխատեն, փորձ կուտակեն, համապատասխան կոփվածք ձեռք բերեն երիտասարդ, հեռանկարային աշխատողները: Դա բնական պրոցես է, որը ստեղծում է քարացածությունից, լճացածությունից և վոլյունտարիզմից խուսափելու հուսալի երաշխիք:

Կադրերի նկատմամբ վստահությունը անհրաժեշտ է զուգակցել նրանց հանդեպ ցուցաբերվող պահանջկոտության հետ, աշխատանքի արդյունքների համար, կուսակցական և պետական կարգապահության պահպանման համար կուսակցական կազմակերպությունների, աշխատավորական կոլեկտիվների առջև նրանց անձնական պատասխանատվության բարձրացման հետ, մասսաների կողմից ղեկավարների գործունեության վերահսկողության ուժեղացման հետ: Յուրաքանչյուր ղեկավար պետք է լրիվ չափով պատասխան տա հանձնարարված գործի համար, ճիշտ կառուցի հարաբերությունները մարդկանց հետ, նրանց ոգևորի անձնական օրինակով: **Ոչ մի կուսակցական կազմակերպություն, ոչ մի աշխատող չպետք է դուրս մնան վերահսկողությունից:**

Կուսակցության զարգացումը բնորոշվում է **կուսակցական շարքերի հետագա աճով և ամրապնդմամբ, դեմոկրատական ցենտրալիզմի սկզբունքների հիման վրա ներկուսակցական հարաբերությունների կատարելագործմամբ:**

Իր մեջ ներառնելով բանվոր դասակարգի, կոլտնտեսային գյուղացիության, սովետական մտավորականության առաջավոր ներկայացուցիչներին, կուսակցությունը ուժեղացնում է իր ազդեցությունը կոմունիստական շինարարության տարբեր տեղամասերում: ՍՄԿԿ-ն անհրաժեշտ է համարում, որպեսզի իր սոցիալական կազմում առաջատար տեղը զբաղեցնեն բանվորները: Կուսակցության շարքերն ընդունվելու վճռորոշ պայմանները եղել և մնում են մարդու քաղաքական և գործարար հատկանիշները, նրա ազնվությունը և օրինապահությունը, կոմունիզմի գործին իր ուժերը տալու պատրաստակամությունը: Կարիերիստական նկատառումներով կուսակցության մեջ խցկվելու փորձերը պետք է վճռականորեն կասեցվեն:

Կուսակցությանը պատկանելը ոչ մի արտոնություն չի տալիս, այլ նշանակում է միայն առավել բարձր պատասխանատվություն այն ամենի համար, ինչ կատարվում է երկրում, կոմունիստական շինարարության, հասարակական առաջադիմության ճակատագրի համար: Յուրաքանչյուր կոմունիստ պարտավոր է լինել օրինակելի աշխատանքում և վարքագծով՝ հասարակական և անձնական կյանքում: Այն բանից, թե ինչպիսի լրիվությամբ է դրսևորվում **կոմունիստների ավանգարդային դերը,** մեծապես կախված են մասսաների հետ կուսակցության կապերի ամրությունը, ժողովրդի մեջ նրա հեղինակությունը: Կուսակցությունը մշտապես կուժեղացնի պահանջկոտությունը յուրաքանչյուր կոմունիստից՝ պարտքի հանդեպ նրա վերաբերմունքի համար, կուսակցականի ազնիվ ու անաղարտ կերպարի համար, նրան կգնահատի ըստ կատարած գործերի ու արարքների:



Իր հաջող գործունեության, կոմունիստների ստեղծագործական բարձր ակտիվության երաշխիքը ՍՄԿԿ-ն տեսնում է **ներկուսակցական դեմոկրատիայի** հետագա **ծավալման և խորացման մեջ,** կուսակցական կյանքի լենինյան նորմերի խստիվ պահպանման, քննադատության և ինքնաքննադատության զարգացման, լայն հրապարակայնության մեջ:

Առաջիկայում ևս կուսակցությունն իր աշխատանքը կկառուցի **կոլեկտիվության** փորձված **սկզբունքի** հիման վրա: Այդ սկզբունքի հետագա հաստատման և զարգացման նպատակով ՍՄԿԿ-ն անհրաժեշտ է համարում բարձրացնել կուսակցական ժողովների, պլենումների, կոնֆերանսների և համագումարների, կուսակցական կոմիտեների և բյուրոների՝ որպես ղեկավարման կոլեգիալ մարմինների, դերն ու նշանակությունը, ապահովել նպաստավոր պայմաններ կուսակցության մեջ նրա քաղաքականության և պրակտիկ գործունեության հարցերի ազատ ու գործարար քննարկման համար:

Զգտելով գործնականում ներկուսակցական կյանքի դեմոկրատական սկզբունքների հետևողական կիրառման, ՍՄԿԿ-ն միաժամանակ չթուլացող ուշադրություն է նվիրում **կուսակցական կարգապահության ամրապնդմանը:** Կուսակցության անդամների ամուր, գիտակցական կարգապահությունը հասարակության կյանքի բոլոր ոլորտներում սոցիալիստական բարձր կարգապահության անհրաժեշտ նախադրյալն է:

Կուսակցության հաջող գործունեությունը, կոմունիստների ակտիվության աճը անխզելիորեն կապված են սկզբնական կուսակցական կազմակերպությունների աշխատանքի հետագա բարելավման հետ: Հանդիսանալով աշխատավորական կոլեկտիվների քաղաքական միջուկը, նրանք կոչված են ըստ ամենայնի նպաստելու մասսաների կենդանի ստեղծագործության հետ կուսակցության քաղաքականության միացմանը:

Կուսակցությունը մշտապես կամրապնդի իր շարքերի միասնությունը և միաձուլությունը: Նա իր միջոցների զինանոցում պահպանում է ՍՄԿԿ կանոնադրությամբ նախատեսվող կազմակերպական երաշխիքները՝ ընդդեմ ֆրակցիոնության և խմբակայնության ամեն կարգի դրսևորումների: **Կուսակցության գաղափարական և կազմակերպական անխախտելի համախմբվածության մեջ է նրա ուժի և անպարտելիության կարևորագույն աղբյուրը:**

ՍՄԿԿ-ն ելնում է մարքս-լենինյան հետևյալ դրույթից. ժողովուրդը պատմության կերտողն է, կոմունիստական արարումը նրա ձեռքի, նրա եռանդի, նրա բանականության գործն է: Ժողովրդի կենդանի ստեղծագործությունը մեր բոլոր նվաճումների գրավականն է:

Կուսակցությունը գոյություն ունի ժողովրդի համար, նրան ծառայելու մեջ է նա տեսնում իր գործունեության իմաստը: Այն նպատակներն ու խնդիրները, որ կուսակցությունը դնում է իր առջև, արտահայտում են սովետական մարդկանց իղձերը, արմատական շահերը: Կուսակցությունը հետագայում ևս կգործի ժողովրդի առջև բարձր պատասխանատվության ոգով, մշտապես կընդլայնի և կխորացնի կապերը մասսաների հետ, կապրի նրանց կարիքներով ու հոգսերով: Նա իր պարտքն է համարում ներքին և արտաքին քաղաքականության կարևորագույն հարցերի շուրջը մշտապես խորհրդակցել աշխատավորների հետ, ուշադրությամբ հաշվի առնել հասարակական կարծիքը, կուսակցական կազմակերպությունների աշխատանքին լայնորեն մասնակից դարձնել անկուսակցականներին: Կուսակցությունը այնքան ավելի մեծ ազդեցություն է գործում հասարակական զարգացման ընթացքի վրա, որքան ավելի ակտիվորեն է նրան աջակցում ժողովուրդը:

Իր ամբողջ գործունեության մեջ ՍՄԿԿ-ն անշեղորեն ղեկավարվում է **պրոլետարական, սոցիալիստական ինտերնացիոնալիզմի մարքս-լենինյան փորձված սկզբունքներով:** Նա ըստ ամենայնի կնպաստի մարքսիզմ-լենինիզմի հիման վրա միջազգային կոմունիստական շարժման համախմբվածության ամրապնդմանը, կզարգացնի եղբայրական կապերը կոմունիստական և բանվորական բոլոր կուսակցությունների հետ, ակտիվորեն կհամագործակցի նրանց հետ խաղաղության համար, միջուկային աղետի վտանգի դեմ մղվող պայքարում, կաջակցի աշխատավորների արմատական շահերի պաշտպանության, ազգային ազատագրության, դեմոկրատիայի և սոցիալիզմի համար նրանց մղած պայքարին:

***

**Այսպիսին է Սովետական Միության կոմունիստական կուսակցության ծրագիրը:**

Կուսակցությունը կոմունիստներին, բոլոր աշխատավորներին՝ բանվորներին, կոլտնտեսականներին, մտավորականությանը կոչ է անում ամենայն եռանդով ձեռնամուխ լինել ծրագրում առաջադրված պատմական խնդիրների իրականացմանը: Կուսակցությունը վստահ է, որ սովետական մարդիկ ՍՄԿԿ ծրագիրն ընդունելով որպես իրենց հարազատ գործը, բոլոր ուժերը կներդնեն այն կենսագործելու համար:

Սոցիալ-տնտեսական առաջադիմության էական արագացման ուղիով հասնել հասարակության որակապես նոր վիճակի՝ այսպիսին է կուսակցության ստրատեգիան: Սոցիալիզմի համակողմանի կատարելագործումը նոր բարիքներ կբերի յուրաքանչյուր ընտանիքի, սովետական յուրաքանչյուր մարդու, կհասցնի սոցիալիստական մեր հայրենիքի հետագա ծաղկման և վերջին հաշվով՝ կոմունիզմի հաղթանակին:

Դեպի այդ նվիրական նպատակը մեր ժողովրդի առաջընթաց շարժումը կբազմապատկի մարքսիզմ-լենինիզմի, հումանիզմի և սոցիալական արդարության սկզբունքներով հասարակության վերակերտման գաղափարների ձգողական ուժը: Դրանք մարդկանց մտքերն ու սրտերը նվաճում են հասարակության առավել կատարյալ կազմակերպման օրինակով, արտադրողական ուժերի անշեղ աճի, ստեղծարար աշխատանքի համար, մարդու երջանկության և բարեկեցության համար պայմաններ ապահովելու օրինակով, ագրեսիվ պատերազմները վճռականապես մերժելով, իրավահավասարության և համընդհանուր անվտանգության հիման վրա ժողովուրդների միջև խաղաղության և լայն համագործակցության սկզբունքների հաստատումով:

Մեր երկրի կոմունիստները, բոլոր աշխատավորները լավատեսությամբ են նայում ապագային: Կուսակցությունը հաստատ համոզված է, որ սովետական ժողովրդի՝ արարող ժողովրդի, ստեղծարար ժողովրդի անձնվեր աշխատանքով կլուծվեն առաջադրված խնդիրները, կնվաճվեն նախանշված բնագծերը:

**ԿՈՒՍԱԿՑՈՒԹՅԱՆ ՂԵԿԱՎԱՐՈՒԹՅԱՄԲ, ՄԱՐՔՍԻԶՄ-ԼԵՆԻՆԻԶՄԻ ԴՐՈՇԻ ՆԵՐՔՈ ՍՈՎԵՏԱԿԱՆ ԺՈՂՈՎՈՒՐԴԸ ԿԱՌՈՒՑԵՑ ՍՈՑԻԱԼԻԶՄ:**

**ԿՈՒՍԱԿՑՈՒԹՅԱՆ ՂԵԿԱՎԱՐՈՒԹՅԱՄԲ, ՄԱՐՔՍԻԶՄ-ԼԵՆԻՆԻԶՄԻ ԴՐՈՇԻ ՆԵՐՔՈ ՍՈՎԵՏԱԿԱՆ ԺՈՂՈՎՈՒՐԴԸ ԿԿԱՌՈՒՑԻ ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ՀԱՍԱՐԱԿԱՐԳ:**

---

Պրոլետարներ բոլոր երկրների, միացե՛ք

# ՍՈՎԵՏԱԿԱՆ ՄԻՈՒԹՅԱՆ ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ԿՈՒՍԱԿՑՈՒԹՅԱՆ ԿԱՆՈՆԱԴՐՈՒԹՅՈՒՆԸ

## Հաստատված է ՍՄԿԿ XXVII համագումարի կողմից

Սովետական Միության կոմունիստական կուսակցությունը սովետական ժողովրդի
մարտական փորձված ավանգարդն է, որը կամավոր հիմունքներով միավորում է
ՍՍՀՄ-ի բանվոր դասակարգի, կոլտնտեսային գյուղացիության և մտավորականու-
թյան առավել գիտակից մասին:
Վ. Ի. Լենինի կողմից որպես բանվոր դասակարգի առաջավոր ջոկատ հիմնա-
դրված կոմունիստական կուսակցությունը պայքարի պանծալի ուղի է անցել, բան-
վոր դասակարգին և աշխատավոր գյուղացիներին հասցրել Հոկտեմբերյան սոցիա-
լիստական մեծ հեղափոխության հաղթանակին, մեր երկրում պրոլետարիատի դիկ-
տատուրայի հաստատմանը: Կոմունիստական կուսակցության ղեկավարությամբ Սո-
վետական Միությունում վերացվեցին շահագործող դասակարգերը, ձևավորվեց և
մշտապես ամրապնդվում է բազմազգ սովետական հասարակության սոցիալ-քաղա-
քական և գաղափարական միասնությունը: Սոցիալիզմը հաղթանակեց լիովին և
վերջնականապես: Պրոլետարական պետությունը վերաճեց համաժողովրդական պե-
տության: Երկիրը թևակոխեց զարգացած սոցիալիզմի փուլը:
ՍՄԿԿ-ն իր դասակարգային էությամբ, գաղափարախոսությամբ, մնալով որպես
բանվոր դասակարգի կուսակցություն, դարձավ ամբողջ ժողովրդի կուսակցությունը:
Կուսակցությունը գոյություն ունի ժողովրդի համար և ծառայում է ժողովրդին:
Նա հասարակական-քաղաքական կազմակերպության բարձրագույն ձևն է, քաղա-
քական սիստեմի միջուկը, սովետական հասարակության ղեկավար և ուղղություն
տվող ուժը: Կուսակցությունը սահմանում է երկրի զարգացման գլխավոր հեռանկա-
րը, ապահովում ժողովրդի ստեղծարար գործունեության գիտական ղեկավարումը,
կազմակերպված, պլանաչափ և նպատակասլաց բնույթ հաղորդում նրա պայքարին
հանուն վերջնական նպատակի՝ կոմունիզմի հաղթանակի:
ՍՄԿԿ-ն իր ամբողջ գործունեության մեջ առաջնորդվում է մարքս-լենինյան ուս-
մունքով, իր ծրագրով, որի մեջ սահմանված են սոցիալիզմի պլանաչափ ու համա-
կողմանի կատարելագործման խնդիրները, երկրի սոցիալ-տնտեսական զարգացումն
արագացնելու հիման վրա դեպի կոմունիզմ սովետական հասարակության հետագա
առաջընթացի խնդիրները:
ՍՄԿԿ-ն իր աշխատանքը կառուցում է կուսակցական կյանքի լենինյան նորմերի,
դեմոկրատական ցենտրալիզմի սկզբունքների անշեղ պահպանման, ղեկավարման
կոլեկտիվության, ներկուսակցական դեմոկրատիայի, կոմունիստների ստեղծագործա-
կան ակտիվության, քննադատության և ինքնաքննադատության զարգացման, լայն
հրապարակայնության հիման վրա:
ՍՄԿԿ-ի կյանքի անխախտ օրենքն է իր շարքերի գաղափարական ու կազմա-
կերպական միասնությունը, միաձուլությունը, բոլոր կոմունիստների գիտակցական
բարձր կարգապահությունը: Ֆրակցիոնության և խմբակայնության ամեն մի դրսևո-
րում անհամատեղելի է մարքս-լենինյան կուսակցականության հետ, կուսակցության
մեջ գտնվելու հետ: Կուսակցությունը ազատվում է այն անձանցից, ովքեր խախտում
են ՍՄԿԿ ծրագիրը, կանոնադրությունը և իրենց վարքով արատավորում կոմունիս-
տի բարձր կոչումը:

Ստեղծագործաբար զարգացնելով մարքսիզմ-լենինիզմը, ՍՄԿԿ-ն վճռականորեն պայքարում է հեղափոխական տեսությանը խորապես խորթ ռևիզիոնիզմի ու դոգմատիզմի ամեն տեսակ դրսևորումների դեմ:

Սովետական Միության կոմունիստական կուսակցությունը միջազգային կոմունիստական շարժման բաղկացուցիչ մասն է: Նա հաստատ կանգնած է պրոլետարական, սոցիալիստական ինտերնացիոնալիզմի մարքս-լենինյան փորձված սկզբունքների վրա, ակտիվորեն նպաստում է եղբայրական սոցիալիստական երկրների համագործակցության ու համախմբվածության, սոցիալիզմի համաշխարհային սիստեմի, միջազգային կոմունիստական ու բանվորական շարժման ամրապնդմանը, համերաշխություն է ցուցաբերում ազգային ու սոցիալական ազատագրման համար, իմպերիալիզմի դեմ, խաղաղության պահպանման համար պայքարող ժողովուրդների հետ:

# I.

## ԿՈՒՍԱԿՑՈՒԹՅԱՆ ԱՆԴԱՄՆԵՐԸ, ՆՐԱՆՑ ՊԱՐՏԱԿԱՆՈՒԹՅՈՒՆՆԵՐԸ ԵՎ ԻՐԱՎՈՒՆՔՆԵՐԸ

1. ՍՄԿԿ անդամ կարող է լինել Սովետական Միության ամեն մի քաղաքացի, որն ընդունում է կուսակցության ծրագիրն ու կանոնադրությունը, ակտիվորեն մասնակցում է կոմունիզմի կառուցմանը, աշխատում է կուսակցական կազմակերպություններից մեկում, կատարում է կուսակցության որոշումները և մուծում անդամավճար:

2. Կուսակցության անդամը պարտավոր է՝

ա) անսասանորեն և անշեղորեն կենսագործել կուսակցության գլխավոր գիծն ու դիրեկտիվները, մասսաներին պարզաբանել ՍՄԿԿ ներքին ու արտաքին քաղաքականությունը, աշխատավորներին կազմակերպել՝ իրականացնելու այդ քաղաքականությունը, նպաստել ժողովրդի հետ կուսակցության կապերի ամրապնդմանը և ընդլայնմանը.

բ) աշխատանքում լինել օրինակելի, պահպանել և բազմապատկել սոցիալիստական սեփականությունը, հաստատակամորեն ձգտել արտադրության արդյունավետության բարձրացման, աշխատանքի արտադրողականության անշեղ աճի, արտադրանքի որակի բարելավման, ժողովրդական տնտեսության մեջ ժամանակակից գիտության, տեխնիկայի և առաջավոր փորձի նվաճումների ներդրման, կատարելագործել իր որակավորումը, հանդես գալ որպես ամենայն նորի, առաջադիմականի ակտիվ ջատագով, առավելագույն ավանդ մուծել երկրի սոցիալ-տնտեսական զարգացման արագացման ասպարեզում.

գ) ակտիվորեն մասնակցել երկրի քաղաքական կյանքին, պետական ու հասարակական գործերի կառավարմանը, լինել քաղաքացիական պարտքի կատարման տիպար, գործուն կերպով նպաստել ժողովրդի սոցիալիստական ինքնակառավարման ավելի ու ավելի լրիվ իրականացմանը.

դ) տիրապետել մարքս-լենինյան տեսությանը, ընդլայնել իր քաղաքական ու կուլտուրական մտահորիզոնը, ըստ ամենայնի նպաստել սովետական մարդկանց գիտակցականության բարձրացմանը, գաղափարաբարոյական աճին: Վճռական պայքար մղել բուրժուական գաղափարախոսության ամեն տեսակ դրսևորումների, մասնավոր սեփականատիրական հոգեբանության, կրոնական նախապաշարմունքների և սոցիալիստական ապրելակերպին խորթ այլ հայացքների ու բարքերի դեմ.

ե) խստիվ պահպանել կոմունիստական բարոյականության նորմերը, հաստատել սոցիալական արդարության՝ սոցիալիզմին ներհատուկ սկզբունքը, հասարակական շահերը վեր դասել անձնականից, հանդես բերել համեստություն և օրինավորություն, մարդկանց նկատմամբ զգայուն և ուշադիր վերաբերմունք, ժամանակին արձագանքել աշխատավորների պահանջմունքներին ու կարիքներին, ճշմարտացի և ազնիվ լինել կուսակցության ու ժողովրդի հանդեպ.

զ) հետևողականորեն աշխատավոր զանգվածներին հասցնել պրոլետարական, սոցիալիստական ինտերնացիոնալիզմի և սովետական հայրենասիրության գաղա-





փարները, պայքար մղել նացիոնալիզմի ու շովինիզմի դրսևորումների դեմ, ակտիվորեն նպաստել ՍՍՀՄ ժողովուրդների բարեկամության ամրապնդմանը, սոցիալիզմի երկրների հետ, ամբողջ աշխարհի պրոլետարների և աշխատավորների հետ եղբայրական կապերի ամրապնդմանը:

է) ըստ ամենայնի նպաստել ՍՍՀՄ պաշտպանական հզորության ամրապնդմանը, անդուլ պայքար մղել հանուն խաղաղության և ժողովուրդների բարեկամության.

ը) ամրապնդել կուսակցության գաղափարական ու կազմակերպական միասնությունը, կուսակցությունը պահպանել այնպիսի մարդկանց ներթափանցումից, որոնք անարժան են կոմունիստի բարձր կոչմանը, ցուցաբերել զգոնություն, պահպանել կուսակցական և պետական գաղտնիքը.

թ) զարգացնել քննադատությունն ու ինքնաքննադատությունը, համարձակորեն բացահայտել թերությունները և հասնել դրանց վերացմանը, պայքարել հանդիսամոլության, գոռոզամտության, ինքնահանգստացման, աչքակապության դեմ, վճռական հակահարված հասցնել քննադատությունը ճնշելու բոլոր փորձերին, հանդես գալ բյուրոկրատիզմի, տեղայնության, գերատեսչականության, կուսակցությանն ու պետությանը վնաս հասցնող ամեն տեսակ գործողությունների դեմ և դրանց մասին հաղորդել կուսակցական մարմիններին, ընդհուպ մինչև ՍՄԿԿ Կենտկոմ.

ժ) անշեղորեն վարել կադրերին ըստ իրենց քաղաքական, գործարար ու բարոյական հատկանիշների ընտրելու կուսակցության գիծը: Անհաշտ լինել այն բոլոր դեպքերում, երբ խախտվում են կադրերի ընտրության ու դաստիարակության լենինյան սկզբունքները.

ի) պահպանել կուսակցական ու պետական կարգապահությունը, որը հավասարապես պարտադիր է կուսակցության բոլոր անդամների համար: Կուսակցությունը մեկ կարգապահություն, մեկ օրենք ունի բոլոր կոմունիստների համար՝ անկախ նրանց ծառայություններից և գրաված պոստերից:

3. Կուսակցության անդամն իրավունք ունի՝

ա) ընտրել և ընտրվել կուսակցական մարմիններում.

բ) կուսակցական ժողովներում, կոնֆերանսներում, համագումարներում, կուսակցական կոմիտեների նիստերում և կուսակցական մամուլում ազատորեն քննարկել կուսակցության քաղաքականության և պրակտիկ գործունեության հարցերը, մտցնել առաջարկություններ, իր կարծիքը բացեիբաց արտահայտել և պաշտպանել մինչև կազմակերպության կողմից որոշման ընդունումը.

գ) կուսակցական ժողովներում, կոնֆերանսներում, համագումարներում, կոմիտեների պլենումներում քննադատել ամեն մի կուսակցական մարմնի, ամեն մի կոմունիստի՝ անկախ նրա գրաված պոստից: Քննադատությունը ճնշելու և քննադատության համար հալածելու մեջ մեղավոր անձինք պետք է ենթարկվեն կուսակցական խիստ պատասխանատվության, ընդհուպ մինչև վտարումը ՍՄԿԿ շարքերից.

դ) անձամբ մասնակցել կուսակցական ժողովներին, բյուրոների ու կոմիտեների նիստերին, երբ քննարկվում է իր գործունեության կամ վարքագծի հարցը.

ե) հարցերով, հայտարարություններով և առաջարկություններով դիմել կուսակցական ամեն մի ինստանցիայի, ընդհուպ մինչև ՍՄԿԿ Կենտկոմ, և պատասխան պահանջել ըստ իր դիմումի էության:

4. Կուսակցության անդամ ընդունելը կատարվում է բացառապես անհատական կարգով: Կուսակցության անդամ են ընդունվում գիտակից, ակտիվ և կոմունիզմի գործին նվիրված քաղաքացիները՝ բանվորների, գյուղացիների և մտավորականության շարքերից: Նոր անդամներ ընդունվում են սահմանված թեկնածուական ստաժն անցած թեկնածուների թվից:

Կուսակցության մեջ ընդունվում են 18 տարեկան դարձած անձինք: Մինչև 25 տարին ներառյալ երիտասարդները կուսակցության մեջ ընդունվում են միայն ՀամԼԿԵՄ-ի միջոցով:

Թեկնածությունից կուսակցության անդամ ընդունվելու կարգը՝

ա) կուսակցության անդամ ընդունվողները ներկայացնում են երաշխավորագրեր ՍՄԿԿ երեք անդամներից, որոնք ունեն առնվազն հինգ տարվա կուսակցական ստաժ և երաշխավորյալներին ճանաչում են առնվազն մեկ տարվա արտադրական և հասարակական համատեղ աշխատանքից:

**Ծանոթագրություն առաջին:** Կուսակցության մեջ ընդունվող ՀամԼԿԵՄ անդամ-

ցատվի ֆրակցիոն խմբավորումների գոյացման, կուսակցությունը պառակտելու փորձերի հնարավորությունը:

27. Կուսակցական ղեկավարման բարձրագույն սկզբունքն է ղեկավարման կոլեկտիվությունը՝ կուսակցական կազմակերպությունների նորմալ գործունեության, կադրերի ճիշտ դաստիարակության, կոմունիստների ակտիվության ու ինքնագործունեության զարգացման անվերապահ պայմանը, կամայական սուբյեկտիվիստական որոշումների ընդունումից, անհատի պաշտամունքի դրսևորումից, կուսակցական կյանքի լենինյան նորմերի խախտումներից պահպանող հուսալի երաշխիքը:

Ղեկավարման կոլեկտիվությունը ենթադրում է հանձնարարված գործի համար անհատական պատասխանատվություն, ամեն մի կուսակցական կազմակերպության, յուրաքանչյուր աշխատողի գործունեության նկատմամբ մշտական վերահսկողություն:

28. ՍՄԿԿ Կենտկոմը, միութենական հանրապետությունների կոմկուսների կենտկոմները, կուսակցության երկրկոմները, մարզկոմները, օկրուգկոմները, քաղկոմները, շրջկոմները համագումարների ու կոնֆերանսների միջև ընկած ժամանակաշրջանում կուսակցական կազմակերպություններին սիստեմատիկաբար տեղյակ են պահում իրենց աշխատանքի մասին, կոմունիստների քննադատական դիտողությունների և առաջարկությունների իրականացման մասին:

Կուսակցական կոմիտեների, սկզբնական կուսկազմակերպությունների համար անխախտ կանոն է նաև իրենց գործունեության և տեղերում գործերի վիճակի մասին վերադաս կուսակցական մարմիններին օբյեկտիվ և ժամանակին տեղյակ պահելը:

29. Կուսակցության կարևորագույն որոշումները քննարկելու և դրանց իրականացման միջոցառումները մշակելու, ինչպես նաև տեղական կյանքի հարցերը քննության առնելու համար գումարվում են շրջանային, քաղաքային, օկրուգային, մարզային, երկրամասային կուսակցական կազմակերպությունների և միութենական հանրապետությունների կոմկուսների ակտիվի ժողովներ:

30. Կուսակցական կոմիտեներում կարող են ստեղծվել կուսակցական աշխատանքի տարբեր հարցերի մշտական կամ ժամանակավոր հանձնաժողովներ ու աշխատանքային խմբեր, ինչպես նաև օգտագործվել հասարակական հիմունքներով կուսակցական մարմինների գործունեության մեջ կոմունիստների ներգրավման ուրիշ ձևեր:

# IV.

# ԿՈՒՍԱԿՑՈՒԹՅԱՆ ԲԱՐՁՐԱԳՈՒՅՆ ՄԱՐՄԻՆՆԵՐԸ

31. Սովետական Միության կոմունիստական կուսակցության գերագույն մարմինը հանդիսանում է կուսակցության համագումարը: Հերթական համագումարները հրավիրվում են Կենտրոնական կոմիտեի կողմից ոչ պակաս, քան հինգ տարին մեկ: Կուսակցական համագումարի հրավիրումը և օրակարգը հայտարարվում են ոչ ուշ, քան համագումարից մեկուկես ամիս առաջ:

Արտահերթ (արտակարգ) համագումարները հրավիրվում են կուսակցության Կենտրոնական կոմիտեի սեփական նախաձեռնությամբ կամ կուսակցական վերջին համագումարում ներկայացված կուսակցության անդամների ընդհանուր թվի առնվազն մեկ երրորդի պահանջով: Արտահերթ (արտակարգ) համագումարը հրավիրվում է երկամսյա ժամկետում և վավերական է համարվում, եթե նրանում ներկայացված է կուսակցության բոլոր անդամների առնվազն կեսը:

Կուսակցության համագումարի ներկայացուցչության նորմաները սահմանում է Կենտրոնական կոմիտեն:

32. Այն դեպքում, երբ կուսակցության Կենտրոնական կոմիտեն 31-րդ պարագրաֆում նշված ժամկետում չհրավիրի արտահերթ (արտակարգ) համագումար, արտահերթ (արտակարգ) համագումար հրավիրել պահանջող կազմակերպություններն իրավունք ունեն կազմելու կազմակերպական կոմիտե, որն արտահերթ (արտակարգ) համագումարի հրավիրման հարցում օգտվում է կուսակցության Կենտրոնական կոմիտեի իրավունքներից:



33. Համագումարը՝

ա) լսում և հաստատում է Կենտրոնական կոմիտեի, Կենտրոնական վերստուգիչ հանձնաժողովի և կենտրոնական մյուս կազմակերպությունների հաշվետվությունները.

բ) վերանայում, փոփոխում և հաստատում է կուսակցության ծրագիրն ու կանոնադրությունը.

գ) սահմանում է կուսակցության գիծը ներքին և արտաքին քաղաքականության հարցերում, քննության է առնում և լուծում կուսակցական ու պետական կյանքի, կոմունիստական շինարարության կարևորագույն հարցերը.

դ) ընտրում է Կենտրոնական կոմիտե և Կենտրոնական վերստուգիչ հանձնաժողով:

34. Կենտրոնական կոմիտեն և Կենտրոնական վերստուգիչ հանձնաժողովը ընտրվում են համագումարի կողմից սահմանվող կազմով: Կենտկոմի անդամների դուրս գալու դեպքում նրա կազմը լրացվում է ՍՄԿԿ Կենտկոմի անդամության թեկնածուների թվից:

35. Սովետական Միության կոմունիստական կուսակցության Կենտրոնական կոմիտեն համագումարների միջև ընկած ժամանակամիջոցում ղեկավարում է կուսակցության, տեղական կուսակցական մարմինների ամբողջ գործունեությունը, իրականացնում է ղեկավար կադրերի ընտրությունն ու տեղաբաշխումը, ուղղություն է տալիս կենտրոնական պետական և աշխատավորների հասարակական կազմակերպությունների աշխատանքին, ստեղծում է կուսակցության զանազան մարմիններ, հիմնարկներ ու ձեռնարկություններ և ղեկավարում դրանց գործունեությունը, նշանակում է կենտրոնական թերթերի և հանդեսների խմբագրություններ, որոնք աշխատում են իր վերահսկողությամբ, բաշխում է կուսակցական բյուջեի միջոցները և վերահսկում նրա կատարումը:

Մյուս կուսակցությունների հետ ունեցած հարաբերություններում ՍՄԿԿ-ին ներկայացնում է Կենտրոնական կոմիտեն:

36. ՍՄԿԿ կենտրոնական վերստուգիչ հանձնաժողովը վերահսկում է կուսակցության կենտրոնական մարմիններում գործերի սահմանված ընթացակարգի կիրառումը, աշխատավորների նամակների, դիմումների ու գանգատների քննարկման աշխատանքը, կուսակցական բյուջեի կատարման, այդ թվում՝ կուսակցական անդամավճարների մուծման, ընդունման և հաշվառման ճշտությունը, ինչպես նաև ՍՄԿԿ Կենտրոնական կոմիտեի ձեռնարկությունների ու հիմնարկների ֆինանսատնտեսական գործունեությունը:

37. ՍՄԿԿ Կենտկոմը առնվազն մեկ պլենար նիստ է ունենում վեց ամիսը մեկ: Կենտկոմի անդամության թեկնածուները Կենտկոմի պլենումների նիստերին ներկա են լինում խորհրդակցական ձայնի իրավունքով:

38. Սովետական Միության կոմունիստական կուսակցության Կենտրոնական կոմիտեն ընտրում է քաղբյուրո՝ Կենտկոմի պլենումների միջև ընկած ժամանակամիջոցում կուսակցության աշխատանքը ղեկավարելու համար, քարտուղարություն՝ ընթացիկ աշխատանքը, գլխավորապես կադրերի ընտրության ու կատարման ստուգման կազմակերպման աշխատանքը ղեկավարելու համար: Կենտրոնական կոմիտեն ընտրում է ՍՄԿԿ Կենտկոմի գլխավոր քարտուղար:

39. Սովետական Միության կոմունիստական կուսակցության Կենտրոնական կոմիտեն Կենտկոմին առընթեր կազմակերպում է կուսակցական վերահսկողության կոմիտե:

ՍՄԿԿ Կենտկոմին առընթեր կուսակցական վերահսկողության կոմիտեն՝ ինչպես

ա) ստուգում է, թե ՍՄԿԿ անդամները և անդամության թեկնածուները
են պահպանում կուսակցական կարգապահությունը, պատասխանատվության է ենթարկում այն կոմունիստներին, որոնք մեղավոր են կուսակցության ծրագրի և կանոնադրության, կուսակցական և պետական կարգապահության խախտման մեջ, ինչպես նաև կուսակցական բարոյականությունը խախտողներին.

բ) քննարկում է կուսակցությունից վտարելու և կուսակցական տույժերի վերաբերյալ միութենական հանրապետությունների կոմկուսների կենտկոմների, կուսակցության երկրամասային և մարզային կոմիտեների որոշումների բողոքարկումները:

40. Կուսակցության համագումարների միջև ընկած ժամանակամիջոցում ՍՄԿԿ Կենտրոնական կոմիտեն ըստ անհրաժեշտության կարող է հրավիրել համամիութենական

ների աշխատավորների շրջանում, նրանց համախմբում կուսակցության շուրջը, կազմակերպում է կատարելու կոմունիստական շինարարության խնդիրները, ակտիվորեն մասնակցում է կուսակցության կադրային քաղաքականության իրականացմանը:

Սկզբնական կուսակցական կազմակերպությունը՝

ա) ՍՄԿԿ-ի մեջ ընդունում է նոր անդամներ.

բ) կոմունիստներին դաստիարակում է կուսակցության գործի նկատմամբ նվիրվածության, գաղափարական համոզվածության, կոմունիստական բարոյականության ոգով.

գ) կազմակերպում է կոմունիստների կողմից մարքս-լենինյան տեսության ուսումնասիրումը՝ կոմունիստական շինարարության պրակտիկայի հետ սերտորեն շաղկապված, պայքարում է բուրժուական գաղափարախոսության, ռևիզիոնիզմի և դոգմատիզմի, հետամնաց հայացքների և տրամադրությունների ամեն տեսակ դրսևորումների դեմ.

դ) հոգ է տանում աշխատանքում և հասարակական-քաղաքական կյանքում կոմունիստների ավանգարդային դերի բարձրացման մասին, կենցաղում՝ նրանց օրինակելի վարքի մասին, լսում է ՍՄԿԿ անդամների և անդամության թեկնածուների հաշվետվությունները՝ նրանց կողմից կանոնադրական պարտականությունների և կուսակցական հանձնարարությունների կատարման մասին.

ե) հանդես է գալիս որպես աշխատավորների կազմակերպիչ տնտեսական ու սոցիալական զարգացման խնդիրները լուծելու գործում, գլխավորում է սոցիալիստական մրցությունը պետական պլաններն ու պարտավորությունները կատարելու, արտադրությունն ինտենսիվացնելու, աշխատանքի արտադրողականությունն ու արտադրանքի որակը բարձրացնելու, գիտության ու տեխնիկայի, առաջավոր փորձի նվաճումները արտադրության մեջ լայնորեն արմատավորելու համար, աշխատավորներին մոբիլիզացնում է հայտնաբերելու ներքին ռեզերվները, ձգտում է հասնել նյութական, աշխատանքային ու ֆինանսական ռեսուրսների ռացիոնալ, խնայողական օգտագործման, հոգում հանրային հարստության պահպանման ու բազմապատկման, մարդկանց աշխատանքի ու կենցաղի պայմանների բարելավման մասին.

զ) ագիտացիոն-մասսայական և պրոպագանդիստական աշխատանք է կատարում, աշխատավորներին դաստիարակում է կոմունիզմի, սովետական հայրենասիրության և ժողովուրդների բարեկամության գաղափարներին նվիրվածության ոգով, նրանց օգնում է մշակելու քաղաքական բարձր կուլտուրա, բարձրացնում է նրանց սոցիալական ակտիվությունն ու պատասխանատվությունը.

է) նպաստում է կոմունիստների, բոլոր աշխատավորների մեջ զարգացնելու սոցիալիստական ինքնակառավարմանը մասնակցելու հմտություններ, ապահովում է ձեռնարկության, հիմնարկության կառավարման գործում աշխատավորական կոլեկտիվի դերի բարձրացումը, ուղղություն է տալիս արհմիութենական, կոմերիտական և հասարակական մյուս կազմակերպությունների աշխատանքին.

ը) քննադատության և ինքնաքննադատության լայն ծավալման հիման վրա պայքար է մղում բյուրոկրատիզմի, տեղայնության, գերատեսչականության դրսևորումների, պետական, աշխատանքային և արտադրական կարգապահության խախտումների դեմ, խափանում է պետությանը խաբելու փորձերը, միջոցներ է ձեռնարկում թափթփվածության, անտնտեսվարության և շռայլումների դեմ, ձգտում է հաստատել սթափ ապրելակերպ:

59. Արդյունաբերության, տրանսպորտի, կապի, շինարարության, նյութատեխնիկական մատակարարման, առևտրի, հասարակական սննդի, կոմունալ-կենցաղային սպասարկման ձեռնարկությունների, կոլտնտեսությունների, սովխոզների և գյուղատնտեսական մյուս ձեռնարկությունների, նախագծային կազմակերպությունների, կոնստրուկտորական բյուրոների, գիտահետազոտական ինստիտուտների, ուսումնական հաստատությունների, կուլտուր-լուսավորական և բուժական հիմնարկների սկզբնական կուսակցական կազմակերպություններն օգտվում են ադմինիստրացիայի գործունեության վերահսկողության իրավունքից:

Մինիստրությունների, պետական կոմիտեների և սովետական, տնտեսական մյուս կենտրոնական ու տեղական հիմնարկների և գերատեսչությունների կուսակցական կազմակերպություններն իրականացնում են ապարատի կողմից կուսակցության ու կառավարության դիրեկտիվների կատարման, սովետական օրենքների պահպանման



աշխատանքի վերահսկողությունը: Նրանք պետք է ակտիվորեն ազդեն ապարատի աշխատանքի կատարելագործման վրա, նրա աշխատակիցների ընտրության, տեղաբաշխման և դաստիարակության վրա, բարձրացնեն նրանց պատասխանատվությունը հանձնարարված գործի, ճյուղի զարգացման, բնակչության սպասարկման նկատմամբ, միջոցներ ձեռնարկեն ամրապնդելու պետական կարգապահությունը, վճռական պայքար մղեն բյուրոկրատիզմի ու քաշքշուկի դեմ, ժամանակին համապատասխան կուսակցական մարմիններին հայտնեն հիմնարկների, ինչպես նաև անհատ գրաված պոստերից՝ առանձին աշխատողների աշխատանքում եղած թերությունների մասին:

Ծանոթագրություն: Սկզբնական կուսակցական կազմակերպություններում կարող են ստեղծվել ադմինիստրացիայի գործունեության և արտադրական գործունեության առանձին ուղղություններում ապարատի աշխատանքի վերահսկման իրավունքի իրականացման հանձնաժողովներ:

# VII.

# ԿՈՒՍԱԿՑՈՒԹՅՈՒՆԸ ԵՎ ՊԵՏԱԿԱՆ, ՀԱՍԱՐԱԿԱԿԱՆ ԿԱԶՄԱԿԵՐՊՈՒԹՅՈՒՆՆԵՐԸ

60. ՍՄԿԿ-ն, գործելով ՍՍՀՄ սահմանադրության շրջանակներում, իրականացնում է պետական և հասարակական կազմակերպությունների ղեկավարումը, ուղղություն է տալիս նրանց գործունեությանը և կոորդինացնում այն:

Կուսակցական կազմակերպությունները, պետական և հասարակական կազմակերպություններում աշխատող կոմունիստները ձգտում են հասնել այն բանին, որ այդ կազմակերպությունները լիակատար չափով իրականացնեն իրենց սահմանադրական լիազորությունները, կանոնադրական իրավունքներն ու պարտականությունները, աշխատավորներին լայնորեն ներգրավեն կառավարման մեջ, քաղաքական, տնտեսական և սոցիալական հարցերի լուծման գործում:

Կուսակցական կազմակերպությունները չեն փոխարինում սովետական, արհմիութենական, կոոպերատիվ և հասարակական մյուս կազմակերպություններին, թույլ չեն տալիս կուսակցական և ուրիշ մարմինների ֆունկցիաների շփոթում:

61. Պետական ու հասարակական կազմակերպությունների հրավիրած համագումարներում, կոնֆերանսներում, ժողովներում, ինչպես նաև այդ կազմակերպությունների ընտրովի մարմիններում, որտեղ կա կուսակցության առնվազն երեք անդամ, կազմակերպվում են կուսակցական խմբեր: Այդ խմբերի խնդիրն է համապատասխան արտակուսակցական կազմակերպություններում կուսակցության քաղաքականության կիրառումը, այդ կազմակերպություններում գործերի վիճակի վրա կոմունիստների ազդեցության ուժեղացումը, դրանց գործունեության դեմոկրատական նորմերի զարգացումը, կուսակցական և պետական կարգապահության ամրապնդումը, պայքարը բյուրոկրատիզմի դեմ, կուսակցական և սովետական դիրեկտիվների կատարման ստուգումը:

62. Արտակուսակցական կազմակերպություններում կուսակցական խմբերի աշխատանքը ղեկավարում է համապատասխան կուսակցական մարմինը՝ ՍՄԿԿ Կենտկոմը, միութենական հանրապետության կոմկուսի Կենտկոմը, կուսակցության երկրկոմը, մարզկոմը, օկրուգկոմը, քաղկոմը, շրջկոմը:

# VIII.

# ԿՈՒՍԱԿՑՈՒԹՅՈՒՆԸ ԵՎ ԿՈՄԵՐԻՏՄԻՈՒԹՅՈՒՆԸ

63. Համամիութենական լենինյան կոմունիստական երիտասարդական միությունը երիտասարդության ինքնագործ հասարակական-քաղաքական կազմակերպություն է, կուսակցության ակտիվ օգնականն ու ռեզերվը: Կոմերիտմիությունը կուսակցությանն օգնում է երիտասարդությանը դաստիարակելու կոմունիզմի ոգով, նրան ներգրավելու

նոր հասարակության պրակտիկ կառուցման, պետական ու հասարակական գործերի կառավարման մեջ, ձևավորելու համակողմանիորեն զարգացած մարդկանց սերունդ՝ պատրաստ աշխատանքի և սովետական հայրենիքի պաշտպանությանը:

64. Կոմերիտական կազմակերպությունները կոչված են լինելու կուսակցական հիմնադրույթների ակտիվ կիրառողները արտադրական և հասարակական կյանքի բոլոր ոլորտներում: Նրանք օգտվում են ձեռնարկության, կոլտնտեսության, հիմնարկության, ուսումնական հաստատության աշխատանքի հարցերը քննարկելու, դրանք համապատասխան կուսակցական կազմակերպությունների առջև դնելու գործում լայն նախաձեռնության իրավունքից, անմիջական մասնակցություն են ունենում այդ հարցերի լուծմանը, հատկապես, երբ դրանք վերաբերում են երիտասարդության աշխատանքին, կենցաղին, ուսմանը և դաստիարակությանը:

65. ՀամԼԿԵՄ-ը աշխատում է Սովետական Միության կոմունիստական կուսակցության ղեկավարությամբ: ՀամԼԿԵՄ-ի տեղական կազմակերպությունների աշխատանքին ուղղություն են տալիս և վերահսկում համապատասխան հանրապետական, երկրամասային, մարզային, օկրուգային, քաղաքային և շրջանային կուսակցական կազմակերպությունները:

Տեղական կուսակցական մարմինները և սկզբնական կուսակցական կազմակերպությունները երիտասարդության կոմունիստական դաստիարակության, արտադրական և հասարակական կյանքի կոնկրետ խնդիրների լուծման համար նրան մոբիլիզացնելու աշխատանքում հենվում են կոմերիտական կազմակերպությունների վրա, պաշտպանում են նրանց օգտակար նախաձեռնությունները, համակողմանի աջակցություն ցույց տալիս նրանց գործունեությանը:

66. ՍՄԿԿ-ի շարքերն ընդունված ՀամԼԿԵՄ անդամները կոմերիտմիությունից դուրս են գալիս կուսակցության մեջ ընդունվելու պահից, եթե նրանք կոմերիտական ընտրովի մարմինների անդամներ չեն և կոմերիտական աշխատանքում չեն գտնվում:

# IX.

# ԿՈՒՍԱԿՑԱԿԱՆ ԿԱԶՄԱԿԵՐՊՈՒԹՅՈՒՆՆԵՐԸ ԶԻՆՎԱԾ ՈՒԺԵՐՈՒՄ

67. Զինված ուժերի կուսակցական կազմակերպություններն իրենց գործունեության մեջ ղեկավարվում են ՍՄԿԿ ծրագրով ու կանոնադրությամբ և աշխատում են Կենտրոնական կոմիտեի կողմից հաստատվող հրահանգների հիման վրա:

Նրանք ապահովում են կուսակցության քաղաքականության կենսագործումը զինված ուժերում, նրանց անձնակազմին համախմբում են կոմունիստական կուսակցության շուրջը, ռազմիկներին դաստիարակում մարքսիզմ-լենինիզմի գաղափարների ոգով, սոցիալիստական հայրենիքի նկատմամբ անսահման նվիրվածության ոգով, ակտիվորեն նպաստում են բանակի և ժողովրդի միասնության ամրապնդմանը, հոգում են զորքերի մարտունակությունը բարձրացնելու, զինվորական կարգապահությունն ամրապնդելու մասին, անձնակազմը մոբիլիզացնում են կատարելու մարտական ու քաղաքական պատրաստության խնդիրները, տիրապետելու նոր տեխնիկային ու զենքին, անթերի կատարելու իրենց զինվորական պարտքը, հրամանատարության հրամանները ու կարգադրությունները:

68. Զինված ուժերում կուսակցական աշխատանքի ղեկավարումը իրականացնում է ՍՄԿԿ Կենտրոնական կոմիտեն քաղաքական մարմինների միջոցով: Սովետական բանակի և ռազմածովային նավատորմի գլխավոր քաղաքական վարչությունն աշխատում է ՍՄԿԿ Կենտկոմի բաժնի իրավունքներով:

Օկրուգների և նավատորմերի քաղվարչությունների պետերի, բանակների, նավակազմերի ու միավորումների քաղբաժինների պետերի համար պարտադիր է հինգ տարվա կուսակցական ստաժը:

69. Զինված ուժերի կուսակցական կազմակերպությունները և քաղաքական մարմինները սերտ կապ են պահպանում տեղական կուսակցական կոմիտեների հետ, նրանց սիստեմատիկաբար տեղյակ են պահում զորամասերում կատարվող քաղաքական աշխատանքի մասին: Զինվորական կուսակցական կազմակերպությունների քարտուղարները և քաղաքական մարմինների ղեկավարները մասնակցում են տեղական կուսակցական կոմիտեների աշխատանքին:



# X.

# ԿՈՒՍԱԿՑՈՒԹՅԱՆ ԴՐԱՄԱԿԱՆ ՄԻՋՈՑՆԵՐԸ

70. Կուսակցության և նրա կազմակերպությունների դրամական միջոցները գոյանում են անդամավճարներից, կուսակցության ձեռնարկությունների եկամուտներից և այլ մուտքերից:

Կուսակցության դրամական միջոցների օգտագործման կարգը որոշում է ՍՄԿԿ Կենտրոնական կոմիտեն:

71. Ամենամսյա անդամավճարները կուսակցության անդամների և ՍՄԿԿ անդամության թեկնածուների համար սահմանվում են հետևյալ չափով.

| | | |
|---|---|---|
| ամսական մինչև 70 ռուբլի վաստակ ունեցողները մուծում են | | 10 կոպեկ |
| 71-ից մինչև 100 ռուբլի | —»— | 20 կոպեկ |
| 101-ից մինչև 150 ռուբլի | —»— | ամսական վաստակի 1,0 տոկոսը |
| 151-ից մինչև 200 ռուբլի | —»— | —»— 1,5 տոկոսը |
| 201-ից մինչև 250 ռուբլի | —»— | —»— 2,0 տոկոսը |
| 251-ից մինչև 300 ռուբլի | —»— | —»— 2,5 տոկոսը |
| 300 ռուբլուց ավելի | —»— | —»— 3,0 տոկոսը: |

72. Կուսակցության անդամության թեկնածու ընդունվելու մուտքի վճար է մուծվում ամսական վաստակի երկու տոկոսի չափով:

# ՍՈՎԵՏԱԿԱՆ ՄԻՈՒԹՅԱՆ ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ԿՈՒՍԱԿՑՈՒԹՅԱՆ XXVII ՀԱՄԱԳՈՒՄԱՐԻ

# ԲԱՆԱՁԵՎԸ

## ՍՄԿԿ Կենտրոնական կոմիտեի Քաղաքական զեկուցման առթիվ

Լսելով և քննարկելով ՍՄԿԿ Կենտրոնական կոմիտեի Քաղաքական զեկուցումը, որով հանդես եկավ ՍՄԿԿ Կենտկոմի գլխավոր քարտուղար ընկ. Մ. Ս. Գորբաչովը, Սովետական Միության կոմունիստական կուսակցության XXVII համագումարը նշում է, որ մեր լենինյան կուսակցությունը իր հերթական համագումար եկավ ստեղծարար գործունեության նոր փորձով հարստացած, համախմբված ու միասնական: Կենսագործելով ՍՄԿԿ ծրագրային հիմնադրույթները, կուսակցության XXVI համագումարի որոշումները, սովետական ժողովուրդը նշանակալից տեղաշարժերի է հասել էկոնոմիկայի ասպարեզում, սոցիալական բնագավառում, մշակույթի ասպարեզում: Ամրապնդվել են սովետական պետության արտաքին քաղաքական դիրքերը, աճել է նրա միջազգային հեղինակությունը: ՍՄԿԿ-ն բարձր է պարզել խաղաղության ու սոցիալական առաջադիմության պայքարի դրոշը:

Ներկայիս բեկումնային փուլում, երկրի ներսում և համաշխարհային ասպարեզի որակապես նոր իրավիճակում վերստին դրսևորվեցին մեր կուսակցության հավատարմությունը մարքսիզմ-լենինիզմին, իրադրությունը խորապես իմաստավորելու և իրատեսորեն գնահատելու, փորձից ճիշտ դասեր առնելու, հասունացած պրոբլեմների լուծման ուղիներ գտնելու, ողջ հնացածը, իր դարն ապրածը հաղթահարելու նրա ընդունակությունը:

ՍՄԿԿ Կենտրոնական կոմիտեն 1985 թվականի ապրիլյան պլենումում համակողմանիորեն վերլուծեց ժողովրդական տնտեսության մեջ և հասարակական կյանքի մյուս ոլորտներում տիրող դրությունը, ձևակերպեց երկրի սոցիալ-տնտեսական զարգացումն արագացնելու ստրատեգիական հիմնադրույթը, որն արժանացավ կոմունիստների, բոլոր սովետական մարդկանց ջերմ պաշտպանությանը: Պլենումը համարձակորեն բացահայտեց թերությունները, ժողովրդին բացեիբաց ասաց դժվարությունների ու վրիպումների մասին, մեծապես խթանեց առաջընթաց շարժումը, դրեց արմատական շրջադարձի սկիզբը դեպի եռանդագին պրակտիկ գործողություններ, դեպի կարգապահության ու գործարարության վճռական ամրապնդում:

Կենտկոմի ապրիլյան պլենումի որոշումներին, ՍՄԿԿ ծրագրի նոր խմբագրության, կուսակցության կանոնադրության փոփոխությունների, ՍՍՀՄ տնտեսական ու սոցիալական զարգացման 1986—1990 թվականների և մինչև 2000 թվականն ընկած ժամանակաշրջանի հիմնական ուղղությունների նախագծերին տրված համաժողովրդական հավանությունը նշանավորում է կուսակցության ու ժողովրդի միասնության հետագա ամրապնդումը, նրա ղեկավար դերի մեծացումը, նոր հնարավորություններ է բացում սոցիալիզմի տնտեսական ու հոգևոր պոտենցիալի առավել լրիվ օգտագործման համար:

Սովետական Միության կոմունիստական կուսակցության XXVII համագումարը որոշում է.

**հավանություն տալ ՍՄԿԿ Կենտրոնական կոմիտեի քաղաքական գծին և պրակտիկ գործունեությանը.**

**հավանություն տալ Կենտրոնական կոմիտեի՝ համագումարին ներկայացված Քաղաքական զեկուցման մեջ շարադրված դրույթներին, հետևություններին ու խնդիրներին, հանձնարարել բոլոր կուսակցական կազմակերպություններին՝ իրենց աշխատանքում առաջնորդվել դրանցով:**



# I.

1. Համագումարը հաստատում և պաշտպանում է ՍՄԿԿ Կենտկոմի Քաղաքական զեկուցման մեջ տրված արդի համաշխարհային զարգացման հիմնական միտումների ու հակասությունների վերլուծությունը, զեկուցման բովանդակած գնահատականներն ու հետևությունները:

2. XX դարում առաջադիմությունը իրավացիորեն կապվում է սոցիալիզմի հետ: Համաշխարհային սոցիալիզմը միջազգային հզոր կազմավորում է: Նա հենվում է բարձր զարգացած էկոնոմիկայի, ժամանակակից գիտական բազայի, հուսալի ռազմաքաղաքական պոտենցիալի վրա: Սոցիալիզմը մշտապես ցուցադրում է հասարակական պրոբլեմները սկզբունքորեն այլ՝ կոլեկտիվիստական հիման վրա լուծելու հնարավորությունները, այդ ուղիով ընթացող երկրներին դուրս է բերել զարգացման ավելի բարձր բնագծեր:

Սոցիալիզմը անդուլ կերպով կատարելագործում է հասարակական հարաբերությունները, նպատակասլաց կերպով բազմապատկում է ձեռք բերվածը, մեծացնում է իր օրինակի ուժն ու համոզչությունը, ցուցադրում է ամբողջ կացութաձևի ռեալ հումանիզմը, մշտապես պատրաստակամություն է ցուցաբերում մասնակցելու միջազգային լայն համագործակցությանը հանուն խաղաղության, հանուն իրավահավասար ու փոխադարձ հիման վրա ժողովուրդների բարգավաճման: Դրանով իսկ սոցիալիզմն ավելի ու ավելի կայուն արգելապատնեշ է կանգնեցնում պատերազմի ու ռազմամոլության, հետադիմության ու բռնության գաղափարախոսության և քաղաքականության դեմ, մարդատյացության բոլոր ձևերի դեմ, ակտիվորեն նպաստում է մարդկության սոցիալական առաջադիմությանը:

3. Ժամանակակից կապիտալիզմը գիտատեխնիկական հեղափոխության ազդեցության տակ և նրա ֆոնի վրա է՛լ ավելի է սրում կոնֆլիկտը մի կողմից վիթխարի չափերով աճած արտադրողական ուժերի և մյուս կողմից՝ հասարակական հարաբերությունների մասնավոր սեփականատիրական բնույթի միջև: Տեղի է ունենում կապիտալիզմի ընդհանուր ճգնաժամի հետագա խորացում: Կապիտալիզմը բախվում է իր բոլոր հակասությունների աննախադեպ միահյուսման, փոխուժեղացման, սոցիալական, տնտեսական և այլ ճգնաժամերի ու գոտեմարտերի մի այնպիսի քանակության, որպիսին նա չէր իմացել իր ամբողջ պատմության ընթացքում: Կապիտալիզմի վրա է ընկնում պատասխանատվությունը արդիականության բոլոր հիմնական պրոբլեմների ստեղծման, պահպանման և սրման համար:

Կապիտալիզմի արմատական հակասության՝ աշխատանքի և կապիտալի միջև եղած հակասության սրման հետևանքներից մեկը արդի պայմաններում որոշ առաջատար կապիտալիստական երկրներում ամբողջ ներքին քաղաքականության հետագա էական աջացման լուրջ վտանգն է:

4. Մարդկության բուն գոյատևմանը արդի պայմաններում հարաճուն սպառնալիք է ներկայացնում իմպերիալիզմը: Նրա ամենահրեշավոր ծնունդը միլիտարիզմն է, որը ձգտում է իր ազդեցությանն ու շահերին ենթարկել բուրժուական հասարակության ամբողջ քաղաքական մեքենան, վերահսկողության տակ առնել հոգևոր կյանքն ու մշակույթը:

Իմպերիալիզմի և միայն իմպերիալիզմի վրա է ընկնում պատասխանատվությունը մեր դարի պատերազմների ու կոնֆլիկտների համար, սպառազինությունների մրցավազքի սանձազերծման և անընդհատ խթանման, դրա նոր ուղղությունների բացման համար: Իմպերիալիզմը, որն առաջինը գործադրեց միջուկային զենք, պատրաստվում է այժմ անել մի նոր, թերևս անուղղելի քայլ՝ սպառազինությունների մրցավազքը փոխադրել տիեզերք, նշանառության տակ վերցնելով ամբողջ մոլորակը:

Իմպերիալիզմը ստեղծել է նեոգաղութատիրության հնարագործ համակարգ: Զարգացող պետությունների անագորույն շահագործումը դառնում է իմպերիալիզմի ռազմամոլական պատրաստությունների ֆինանսավորման, նրա ներքին քաղաքականության, նրա բուն գոյատևման ավելի ու ավելի կարևոր գործոնը: Իմպերիալիզմը ավելի ու ավելի ուժգին է իրեն հակադրում համայն մարդկությանը:

5. Պատմության, հասարակական առաջադիմության ընթացքը ավելի ու ավելի հրամայաբար է պահանջում պետությունների ու ժողովուրդների կոնստրուկտիվ, ստեղծարար փոխգործողության հաստատում ամբողջ մոլորակի մասշտաբներով:

Երկու սիստեմների մրցության, նրանց պատմական հակամարտության և համաշխարհային միության պետությունների փոխադարձ կախման հարանուն միտումի զուգակցման մեջ առկա է ժամանակակից համաշխարհային զարգացման ռեալ դիալեկտիկան: Հակադրությունների պայքարի միջոցով ստեղծվում է հակասական, բայց փոխադարձաբար կախվածությամբ շատ բանով ամբողջական աշխարհ: Համաշխարհային զարգացումը, նրա արդի փուլը ամեն մի պետության ներկայացնում են առանձնապես խիստ պահանջներ, անկախ նրանից՝ խոսքը վերաբերում է արտաքին քաղաքականությանը, տնտեսական ու սոցիալական գործունեությանը, հասարակության հոգևոր կերպարին:

XX դարի վերջին տասնամյակները մոլորակի ժողովուրդների առջև դրել են դժվարին և սուր պրոբլեմներ: Համամարդկային ամենակենսական խնդրի լուծման պահանջմունքը պետք է նրանց մղի փոխգործողության, ելք տա մարդկության ինքնապահպանման միտումներին: Համաշխարհային զարգացման ընթացքը դրա համար ստեղծում է նյութական, սոցիալական, քաղաքական և այլ կարգի անհրաժեշտ նախադրյալներ: Համագումարը սրանում տեսնում է ժամանակի իրողություններին համապատասխանող լուծումների ու գործողությունների խթանը:

Ամբողջ աշխարհի խաղաղության ու առաջադիմության ուժերը կարող են չեզոքացնել իմպերիալիզմի կողմից սպառնացող վտանգը, կանգնեցնել աշխարհի սողքը դեպի միջուկային վիհի եզերքը, կանխել տիեզերքի վերածումը մարտադաշտի: Մարդկային կյանքը, դրա համակողմանի բացահայտման հնարավորությունները, հասարակական զարգացման շահերը ամեն ինչից վեր են: Համագումարը դրան է կողմնորոշում ՍՄԿԿ-ի և սովետական պետության ամբողջ պրակտիկ գործունեությունը:

## II.

1. Կուսակցության գործունեության գլխավոր ոլորտը եղել և մնում է էկոնոմիկան: Հենց այստեղ են նախադրյալներ ստեղծվում խաղաղության պայմաններում սովետական մարդկանց նյութապես ու հոգեպես հարուստ, սոցիալապես հագեցած կյանք ապահովելու համար, հասարակության որակական նոր վիճակի հասնելու համար:

Համագումարը նշում է, որ ՍՄԿԿ երրորդ ծրագրի ընդունումից հետո անցած քառորդ դարում երկրի ժողովրդական տնտեսությունը զգալիորեն առաջ է ընթացել: Ազգային եկամուտն ավելացել է գրեթե 4 անգամ, արդյունաբերական արտադրությունը՝ 5 անգամ, գյուղատնտեսական արտադրությունը՝ 1,7 անգամ: Մի շարք կարևորագույն արտադրատեսակների թողարկմամբ Սովետական Միությունը հաստատապես առաջին տեղն է գրավում աշխարհում: Աճել է ժողովրդի բարեկեցությունը: Բնակչության մեկ շնչի հաշվով ռեալ եկամուտներն ավելացել են 2,6 անգամ, սպառման հասարակական ֆոնդերը՝ ավելի քան 5 անգամ: Բարելավվել են ընտանիքների մեծ մասի բնակարանային պայմանները: Հանրահայտ են հայրենական գիտության, կրթության, առողջապահության, մշակույթի զարգացման հաջողությունները:

Պատշաճը հատուցելով ձեռք բերվածին, համագումարը դրա հետ մեկտեղ ուշադրություն է դարձնում սոցիալ-տնտեսական զարգացման դժվարությունների և բացասական պրոցեսների վրա, որոնք դրսևորվեցին 70-ական թվականներին և 80-ական թվականների սկզբին: Այդ ժամանակ նկատելիորեն դանդաղեցին էկոնոմիկայի, աշխատանքի արտադրողականության աճի տեմպերը, վատացան արդյունավետության ցուցանիշները, դանդաղեց գիտատեխնիկական առաջադիմությունը, ուժեղացավ անհամամասնությունը էկոնոմիկայում: Չէին կատարվում հնգամյա պլանների առաջադրանքները, լրիվ ծավալով չէին իրականացվում նաև նախատեսված սոցիալական միջոցառումները: Համագումարը ետ մնալու գլխավոր պատճառը համարում է այն, որ ժամանակին չտրվեց տնտեսական իրավիճակի փոփոխման քաղաքական գնահատականը, չգիտակցվեց էկոնոմիկան զարգացման ինտենսիվ մեթոդների փոխադրելու ամբողջ սրությունն ու անհրաժեշտությունը, հաստատակամություն և հետևողականություն չէր դրսևորվում տնտեսական քաղաքականության, տնտեսական մեխանիզմի, տնտեսական գործունեության բուն հոգեբանության վերակառուցման հասունացած հարցերը լուծելիս: Չնայած վերջին ժամանակների ջանքերին, չհաջողվեց լրիվ չափով շտկել դրությունը:



Այս պայմաններում ընդհանուր կուսակցական, համապետական կարևորագույն խնդիրն այն է, որ կարճ ժամանակամիջոցում վճռականորեն և մինչև վերջ հաղթահարվեն էկոնոմիկայի զարգացման աննպաստ միտումները, մեծ դինամիզմ հաղորդվի նրան, ասպարեզ բացվի հիրավի հեղաշրջիչ վերափոխումների համար, այդ պրոցեսների մեջ ընդգրկվեն աշխատավորության լայն խավերը:

2. Համագումարը ամբողջովին հավանություն է տալիս երկրի սոցիալ-տնտեսական զարգացումն արագացնելու ՍՄԿԿ Կենտրոնական կոմիտեի մշակած կոնցեպցիային, այն իրացնելու գործնական քայլերին: Կուսակցության ստրատեգիական կուրսն այն է, որ անցում կատարվի բարձր կազմակերպված և արդյունավետ էկոնոմիկայի՝ համակողմանիորեն զարգացած արտադրողական ուժերով, սոցիալիստական հասուն արտադրահարաբերություններով, կարգավորված տնտեսական մեխանիզմով: Արտադրության մեջ որակական խոր փոփոխությունների կարևոր փուլ է տասներկուերորդ հնգամյակը:

Համագումարը կուսակցական, սովետական, տնտեսական, հասարակական կազմակերպություններին պարտավորեցնում է իրենց ամբողջ գործունեության հիմքում դնել ժողովրդական տնտեսությունը զարգացման ինտենսիվ ուղի փոխադրելու ծրագրային հիմնադրույթների անշեղ իրագործումը: Բոլոր մակարդակներով տնտեսական շինարարության ղեկավարման մեջ ուշադրության կենտրոնը քանակական ցուցանիշներից փոխադրել որակի և արդյունավետության վրա, միջանկյալ արդյունքներից՝ վերջնականի վրա, արտադրական ֆոնդերի ընդլայնումից՝ դրանց նորացման վրա, վառելիքահումքային ռեսուրսներն ավելացնելուց՝ դրանց օգտագործման բարելավման վրա, գիտատարողունակ ճյուղերի արագացված զարգացման վրա համապատասխանաբար վերակառուցել կառուցվածքային և ինվեստիցիոն ներդրումների քաղաքականությունը:

Կուսակցությունը որպես ժողովրդական տնտեսության ինտենսիվացման գլխավոր լծակ առաջ է քաշում գիտատեխնիկական առաջադիմության արմատական արագացումը, նոր սերունդների տեխնիկայի, սկզբունքորեն նոր տեխնոլոգիաների լայն արմատավորումը, որոնք ապահովեին առավելագույն արտադրողականություն և արդյունավետություն: Համագումարը առաջնային է համարում գիտության ու տեխնիկայի ամենաարդիական նվաճումների հիման վրա ժողովրդական տնտեսության տեխնիկական խոր վերակառուցում իրականացնելու խնդիրը:

Յուրաքանչյուր ճյուղ, ձեռնարկություն և միավորում պետք է ունենա արտադրության մշտական նորացման հստակ ծրագիր: Ամենայն խստիվությամբ պետք է հաշիվ պահանջել այն ղեկավարներից, ովքեր գործի էությունը նենգափոխում են ցուցամոլ միջոցառումներով, թերատ որոշումներով, խեղաթյուրում տեխնիկական վերակառուցման բուն գաղափարը:

Գիտատեխնիկական առաջադիմության արագացման մեջ կոչված է առաջատար դեր կատարելու մեքենաշինությունը, որն անհրաժեշտ է ամենակարճ ժամանակամիջոցում հասցնել տեխնիկական ամենաբարձր մակարդակի: Կարևորագույն խնդիր է արդիական էլեկտրոնային հաշվողական տեխնիկայի մշակումն ու մասսայական արտադրությունը: Պետք է վառելիքաէներգետիկ համալիրի արմատական վերակառուցում իրականացվի, ապահովվի էներգետիկ ծրագրի կատարումը: Շատ բան է արվելու մետալուրգիայի զարգացման և ժողովրդական տնտեսության քիմիացման, նոր կոնստրուկցիոն և առաջադիմական այլ նյութերի եղած պահանջմունքների ապահովման համար:

Կուսակցությունը հսկայական նշանակություն է տալիս արտադրական ինֆրաստրուկտուրայի, առաջին հերթին տրանսպորտի և կապի տեխնիկական վերազինմանը, ինչպես նաև թեթև արդյունաբերության և բնակչության պահանջմունքների բավարարման համար անմիջականորեն աշխատող մյուս ճյուղերի առաջնային զարգացմանը:

Ժողովրդական տնտեսության վերակառուցման նպատակով աշխատանքների ծավալման առնչությամբ համագումարը նշում է կապիտալ շինարարությունը արմատապես բարելավելու, ամբողջ շինարարական համալիրը ինդուստրիալ և կազմակերպական նոր մակարդակի բարձրացնելու, ինվեստիցիոն շրջափուլը էապես կրճատելու անհրաժեշտությունը:

Համագումարը խնդիր է դնում իրականացնելու գիտության եռանդագին շրջա-

Ճնշումամբ անհաշտվողականության, հասարակության և պետության շահերի նկատմամբ հոգատար վերաբերմունքի գործուն միջոցներից մեկը:

6. ՍՍՀՄ-ի և մյուս սոցիալիստական երկրների դեմ իմպերիալիզմի քայքայիչ նկրտումների ուժեղացման պայմաններում զգալիորեն մեծանում է պետական անվտանգության մարմինների պատասխանատվությունը, որոնք կոչված են հանդես բերել մեծագույն զգոնություն, ժամանակին մերկացնել և վճռականորեն խափանել մեր պետական ու հասարակական կարգը խարխլելու կամ թուլացնելու ամեն տեսակ փորձերը:

Համագումարը գոհունակությամբ նշում է, որ կուսակցության, նրա Կենտրոնական կոմիտեի, Կենտկոմի քաղբյուրոյի անդուլ ուշադրության շնորհիվ ՍՍՀՄ-ի պաշտպանական հզորությունը պահպանվում է սովետական մարդկանց խաղաղ, ստեղծարար աշխատանքը հուսալիորեն երաշխավորող մակարդակի վրա: Զինված ուժերի մարտական պատրաստության ըստ ամենայնի բարձրացումը, զգոնության և սոցիալիզմի մեծ նվաճումները պաշտպանելու մշտական պատրաստակամության ոգով բանակի ու նավատորմի ռազմիկների, բոլոր սովետական մարդկանց դաստիարակությունը պետք է այսուհետև էլ մնան կուսակցության, պետության և ժողովրդի կարևորագույն խնդիրներից մեկը:

## IV.

1. ՍՄԿԿ-ի արտաքին քաղաքական ստրատեգիայի գլխավոր նպատակն է սովետական ժողովրդի համար ապահովել կայուն խաղաղության և ազատության պայմաններում աշխատելու հնարավորություն: Ուստի, ապագայում էլ միջազգային ասպարեզում կուսակցության գործունեության գլխավոր ուղղությունը պետք է մնա պայքարն ընդդեմ միջուկային վտանգի, սպառազինությունների մրցավազքի, հանուն ընդհանուր խաղաղության պահպանման և ամրապնդման:

Համագումարն ընդգծում է, որ այդ քաղաքականությունը այլընտրանք չունի: Արդիական զենքի բնույթը ոչ մի պետության հույս չի թողնում իրեն պաշտպանելու ռազմատեխնիկական միջոցներով, նույնիսկ ամենահզոր պաշտպանության ստեղծումով, քանի որ արդեն ոչ միայն հենց միջուկային պատերազմը, այլև սպառազինությունների մրցավազքը շահել չի կարելի: Երկրագնդում այդ մրցավազքի շարունակումը, իսկ առավել ևս տիեզերքի վրա դրա տարածումը կարագացնի միջուկային զենքի և մյուս զինատեսակների կուտակման ու կատարելագործման առանց այն էլ վտանգավոր արագ տեմպը, ինչի հետևանքով նույնիսկ հավասարակշռությունը կդադարի ռազմաքաղաքական զսպման գործոն լինելուց: Հետևաբար նաև անվտանգության ապահովումը ավելի ու ավելի մեծ չափով է դառնում քաղաքական խնդիր, որը լուծել կարելի է միայն քաղաքական միջոցներով:

2. ՍՄԿԿ Կենտրոնական կոմիտեի կողմից միջուկային սպառնալիքի բնույթի և մասշտաբների վերլուծությունը թույլ տվեց ձևակերպել տեսական ու գործնական կարևոր նշանակություն ունեցող այն հետևությունը, որ միջազգային ասպարեզում ստեղծվել են այնպիսի օբյեկտիվ պայմաններ, որոնցում կապիտալիզմի և սոցիալիզմի հակամարտությունը կարող է ընթանալ միայն և բացառապես խաղաղ մրցության և խաղաղ մրցակցության ձևերով:

Ելնելով դրանից, համագումարը Կենտկոմին հանձնարարում է հետևողականորեն, պլանաչափորեն և հաստատակամորեն ձգտել հասնելու միջազգային անվտանգության պրոբլեմների լուծմանը, Սովետական Միության արտաքին քաղաքականությունը կողմնորոշելով խաղաղ գոյակցության կուրսի անշեղ վարման, մեր սկզբունքների ու դիրքերի հաստատակամ պաշտպանության, տակտիկական ճկունության, փոխադարձաբար ընդունելի կոմպրոմիսների դիմելու պատրաստակամության, երկխոսության և փոխըմբռնման նպատակադրվածության ուղղությամբ:

Համագումարն ընդգծում է բոլոր ուղղություններով սովետական արտաքին քաղաքականության հետագա ակտիվացման, լարվածության օջախների արդարացի, խաղաղ կարգավորման որոնումների, բոլոր պետությունների հետ բարիդրացիական, փոխշահավետ հարաբերությունների զարգացման անհրաժեշտությունը:

3. Առաջիկա տարիներին Սովետական Միության արտաքին քաղաքականության կենտրոնական ուղղությունը պետք է դառնա պայքարը՝ ՍՄԿԿ Կենտկոմի գլխավոր



քարտուղարի 1986 թվականի հունվարի 15-ի հայտարարության մեջ առաջ քաշված
մասսայական բնաջնջման զենքի ոչնչացման և պատերազմի վտանգի կանխման
ծրագրի իրականացման համար: Իր մասշտաբներով ու նշանակությամբ պատմա-
կան այդ ծրագրի իրականացումը մարդկության առջև կբացեր զարգացման սկզ-
բունքորեն այլ ժամանակաշրջան, միայն արարման վրա կենտրոնանալու հնարավո-
րություն:
Համագումարը միանշանակ կերպով հավաստում է սովետական ռազմական
դոկտրինայի պաշտպանողական ուղղվածությունը, որը հիմնվում է այն բանի վրա,
որ ՍՍՀՄ-ը միջուկային պատերազմի ամենահամոզված հակառակորդն է՝ դրա
ամեն մի տարբերակով: Մեր երկիրը հանդես է գալիս այն բանի օգտին, որ մաս-
սայական ոչնչացման զենքը հանվի շրջանառությունից, ռազմական պոտենցիալը
սահմանափակվի բանականորեն բավարար քանակության շրջանակներով: Բայց այդ
սահմանի բնույթն ու մակարդակը շարունակում են լիմիտավորվել ԱՄՆ-ի, բլոկների
գծով նրա պարտնյորների դիրքորոշումներով ու գործողություններով: Սովետական
Միությունը ավելի մեծ անվտանգության հավակնություն չունի, սակայն ավելի փոքր
անվտանգության էլ չի համակերպվի:
4. Համագումարը արձանագրում է, որ միջազգային իրադրության առողջացման
նախադրյալները, որոնք սկսել են ստեղծվել վերջին ժամանակներս, դեռևս բուն
շրջադարձը չեն. սպառազինությունների մրցավազքը շարունակվում է, միջուկային
պատերազմի սպառնալիքը մնում է: Սակայն միջազգային հետադիմությունը բնավ
էլ ամենազոր չէ: Համաշխարհային հեղափոխական պրոցեսի զարգացումը, մասսա-
յական դեմոկրատական և հակապատերազմական շարժումների վերելքը զգալիորեն
ընդլայնել և ուժեղացրել են խաղաղության, բանականության ու բարի կամքի հըս-
կայական պոտենցիալը, որը իմպերիալիզմի ագրեսիվ քաղաքականության հզոր
հակակշիռն է: ՍՄԿԿ-ն մտադիր է այսուհետև էլ ըստ ամենայնի նպաստել այդ
պոտենցիալի ամրապնդմանը:
5. Այսօր խաղաղության և սոցիալական առաջադիմության բախտը, ավելի, քան
երբևիցե, ավելի սերտորեն է կապված սոցիալիզմի համաշխարհային սիստեմի տըն-
տեսական ու քաղաքական զարգացման դինամիկության հետ: Համագումարն այն
համոզմունքն է հայտնում, որ սոցիալիզմը կարող է լուծել ամենաբարդ խնդիրները,
նշում է սոցիալիզմի երկրների ավելի ու ավելի ակտիվ փոխգործակցության կարևո-
րությունը, որն ընդհանուր առաջընթացի արագացման ազդակ է ծառայում:
Համագումարը ամբողջովին պաշտպանում է ՍՄԿԿ Կենտկոմի ապրիլյան պլե-
նումից հետո սոցիալիստական ընկերակցության երկրների փոխհարաբերություննե-
րում դրսևորվող նոր դրական հատկանիշները: Մեր երկրների քաղաքական համա-
գործակցության հոգին եղել են և մնում են կառավարող կոմունիստական կուսակ-
ցությունների փոխգործակցությունը, դրա մեթոդների ու ձևերի կատարելագործումն
ու նորացումը, որոնք թույլ են տալիս օպերատիվորեն, ընկերաբար խորհրդակցել
սոցիալիստական շինարարության պրոբլեմների ամբողջ կոմպլեքսի շուրջը: Նման
մոտեցումը համապատասխանում է ժամանակի պահանջներին, հարստացնում մեր
կուսակցությունների ու պետությունների կապերի բովանդակությունը բոլոր մակար-
դակներում:
Համագումարն ընդգծում է այն կարևոր նշանակությունը, որ ունեցավ, հաշվի
առնելով միջազգային իրադրությունը, Վարշավայի պայմանագրի մասնակիցների
միահամուռ որոշմամբ այդ պայմանագրի երկարաձգումը, պայմանագիր, որը թե
եվրոպական և թե ամբողջությամբ վերցված համաշխարհային քաղաքականության
ազդու, կոնստրուկտիվ գործոն է:
ՍՄԿԿ-ն հատուկ նշանակության գործ է համարում ՏՓԽ-ի անդամ երկրների
գիտատեխնիկական առաջադիմության կոմպլեքսային ծրագրի ընդունումը, սովե-
տական կոմունիստների, գիտնականների, ինժեներների, բանվորների պատվի
պարտքն է համարում նորարարական, նախաձեռնողական մոտեցման դրսևորումը
սոցիալիստական տնտեսական ինտեգրացման հանգուցային ուղղություններում:
Արտահայտվելով սոցիալիստական երկրների աշխատավորական կոլեկտիվնե-
րի, հասարակական կազմակերպությունների, քաղաքացիների լայն շփման օգտին,
համագումարը ընդգծում է մոքերով, գաղափարներով, սոցիալիստական շինարա-
րության փորձով փոխադարձ հարստացման հարանուն նշանակությունը: Դա նպաս-

տում է կյանքի կողմից առաջադրվող պրոբլեմների լուծմանը, դասակարգային հակառակորդի կողմից ստեղծվող և օգտագործվող ճգնաժամային իրավիճակների կանխարգելմանը, մի սոցիալիստական երկիր մյուսին հակադրելու նրա փորձերի դիմագրավմանը, տարբեր սոցիալիստական պետությունների շահերի փոխադարձ ներդաշնակմանը, ամենաբարդ պրոբլեմների փոխադարձաբար ընդունելի լուծումներ գտնելուն:

6. ՍՄԿԿ-ն հանդես է գալիս բոլոր կոմունիստական կուսակցությունների, համաշխարհային սոցիալիստական սիստեմի բոլոր պետությունների հետ ազնիվ, անկեղծ հարաբերությունների օգտին, նրանց հետ կարծիքների ընկերական փոխանակման օգտին: Կուսակցությունը ողջունում է սոցիալիստական պետությունների մերձեցման ճանապարհին արվող ամեն մի քայլ, նրանց փոխհարաբերություններում կատարվող ամեն մի դրական փոփոխություն:

Այս կապակցությամբ համագումարը գոհունակությամբ է նշում մեծ հարևանի՝ սոցիալիստական Չինաստանի հետ ՍՍՀՄ-ի փոխհարաբերությունների որոշակի բարելավումը, իրավահավասար, երրորդ երկրներ չշոշափող հիմքի վրա համագործակցությունը զարգացնելու հնարավորությունը, չնայած մի շարք միջազգային պրոբլեմների նկատմամբ մոտեցումների մեջ եղած տարբերություններին: Այդպիսի համագործակցության ռեզերվները, համագումարի համոզմամբ, հսկայական են, որովհետև դրանք համապատասխանում են երկու երկրների արմատական շահերին, որոնց ժողովուրդների համար անբաժանելի է ամենաթանկ բանը՝ սոցիալիզմն ու խաղաղությունը:

7. ՍՄԿԿ-ն, միս ու արյուն առնելով միջազգային կոմունիստական շարժումից, նրա հանդեպ իր գլխավոր ինտերնացիոնալ պարտքն է համարում սովետական հասարակության հաջող առաջընթացը Հոկտեմբերի բացած ու հարթած ուղիով:

Համագումարը ելնում է այն բանից, որ կոմունիստական շարժման բազմազանությունը տարանջատվածության հոմանիշ չէ, ճիշտ այնպես, ինչպես միասնությունը ընդհանուր ոչինչ չունի միակերպության, հիերարխիայի հետ, մի կուսակցության գործերին մյուս կուսակցության միջամտության հետ, ճշմարտության մենաշնորհ ունենալու որևէ կուսակցության ձգտման հետ:

Կոմունիստական շարժումը ուժեղ է Մարքսի, Էնգելսի, Լենինի ուսմունքի հիման վրա համարձակ ստեղծագործական մոտեցմամբ նոր իրողություններին, իր դասակարգային համերաշխությամբ, ընդհանուր նպատակի՝ խաղաղության և սոցիալիզմի համար պայքարում բոլոր եղբայրական կուսակցությունների իրավահավասար համագործակցությամբ: Այս նպատակներն են հենց այն գլխավորը, որը որոշում է, թե ինչն է միավորում տարբեր երկրների կոմունիստներին: Համագումարը ՍՄԿԿ Կենտկոմին հանձնարարում է ըստ ամենայնի աջակցել կոմունիստական և բանվորական կուսակցությունների այդպիսի համերաշխության և այդպիսի համագործակցության ամրապնդմանը:

8. Խաղաղության, բանականության ու բարի կամքի օգտին միջազգային ասպարեզում ուժերի հարաբերակցության փոփոխման միտումը կայուն է և սկզբունքորեն անշրջելի: Սակայն այդ հարաբերակցությունը ստեղծվում է առաջադիմության և հետադիմության միջև սուր և դինամիկ հակամարտության ընթացքում: Ուստի, համագումարը հավաստում է ՍՄԿԿ-ի անշեղ համերաշխությունը ազգային և սոցիալական ազատագրման ուժերի հետ, սոցիալիստական կողմնորոշման երկրների, հեղափոխական դեմոկրատական կուսակցությունների, չմիանալու շարժման հետ սերտ փոխգործողության, սոցիալ-դեմոկրատիայի հետ կոնտակտների ու համագործակցության զարգացման, բոլոր նրանց հետ կապերի ընդլայնման իր գիծը, ովքեր հանդես են գալիս ընդդեմ պատերազմի, հանուն միջազգային անվտանգության:

9. Համագումարը նշում է Կենտկոմի Քաղաքական զեկուցման մեջ առաջադրված սկզբունքային «միջազգային անվտանգության համապարփակ սիստեմի ստեղծման հիմունքների» առանձնակի կարևորությունը, որոնցով առաջնորդվելով կարելի էր հասնել այն բանին, որ խաղաղ գոյակցությունը դառնա միջպետական հարաբերությունների բարձրագույն ունիվերսալ սկզբունքը: ՍՄԿԿ-ի անունից համագումարը բոլոր կառավարություններին, կուսակցություններին, հասարակական կազմակերպություններին ու շարժումներին, որոնք, իրոք, մտահոգված են աշխարհի խաղաղության բախտով, բոլոր ժողովուրդներին կոչ է անում է՛լ ավելի սերտորեն



և արդյունավետորեն համագործակցել պատերազմի դեմ մղվող ճակատամարտում հաջողության հասնելու համար, հաջողություն, որը կլինի ամբողջ մարդկության, մեր մոլորակի յուրաքանչյուր մարդու պատմական հաղթանակը:

## V.

1. Ներկա փուլը՝ հասարակության որակական վերափոխման փուլը, կուսակցությունից, նրա բոլոր կազմակերպություններից պահանջում է նոր ջանքեր, սկզբունքայնություն՝ սեփական աշխատանքը գնահատելիս, գործարարություն և անձնվիրություն: Կուսակցության ղեկավար դերի հետագա բարձրացմանը, սոցիալիստական հասարակության բոլոր բջիջների գործունեության վրա նրա ազդեցության ուժեղացմանը կնպաստի ՍՄԿԿ ծրագրի նոր խմբագրության, կուսակցության կանոնադրության դրույթների հետևողական կենսագործումը, որոնք մարմնավորում և զարգացնում են Վ. Ի. Լենինի մշակած և պրակտիկայում ստուգված կուսակցական շինարարության, կուսակցական աշխատանքի ոճի ու մեթոդների բոլշևիկյան սկզբունքները, կոմունիստների վարքագծի գաղափարաբարոյական նորմերը: Իրենց պրակտիկ աշխատանքում կուսակցական կազմակերպությունները պետք է ելնեն այն բանից, որ որքան բազմազան, հագեցված է ներկուսակցական կյանքը, որքան խստորեն է պահպանվում դեմոկրատական ցենտրալիզմի լենինյան սկզբունքը, այնքան ուժեղ ու արդյունավետ է կուսակցության ներգործությունը հասարակական պրոցեսների վրա:

2. Արդի պայմաններում, երբ լուծվելիք խնդիրների մասշտաբները, նորությունն ու բարդությունը բարձր պահանջներ են ներկայացնում կուսակցության ամբողջ քաղաքական, գաղափարախոսական և կազմակերպչական գործունեությանը, առաջնակարգ կարևորության գործ են կուսակցական աշխատանքի արմատական վերակառուցման ապահովումը, յուրաքանչյուր կուսակցական կազմակերպությունում ստեղծագործության, սկզբունքային պահանջկոտության և ինքնաքննադատության մթնոլորտի հաստատումը, սոցիալ-տնտեսական, գիտատեխնիկական և գաղափարադաստիարակչական պրոբլեմների նոր գործուն լուծումների որոնումը:

Դրականորեն գնահատելով ՍՄԿԿ Կենտկոմի 1985 թվականի ապրիլյան պլենումի առաջադրած խնդիրների լուծմանը նորարարական, նախաձեռնողական մոտեցման օրինակները, համագումարը դրա հետ մեկտեղ նշում է, որ վերակառուցման անհրաժեշտությունը գիտակցված է դեռևս ոչ բոլորի կողմից և ոչ ամենուրեք: Շատ կազմակերպություններում դանդաղորեն են հաղթահարվում անտարբերությունը, ձևականությունը և միօրինակությունն աշխատանքում:

Միութենական հանրապետությունների կոմկուսների կենտկոմները, կուսակցության երկրկոմները, մարզկոմները, օկրուգկոմները, քաղկոմներն ու շրջկոմները պարտավոր են ավելի վճռականորեն արմատախիլ անել քարացածությունն ու պահպանողականությունը՝ դրանց բոլոր դրսևորումներով հանդերձ, ճշմարիտ իրավիճակը գունազարդելու ձգտումը, հաստատակամորեն հաղթահարել կազմակերպամոլության, նիստարարության և թղթարարության արմատացած հակումը: Իրերն իրենց անուններով կոչելը, ամեն ինչի մասին անկեղծորեն դատելը, վերադաս կուսակցական մարմիններին և մասսաներին օբյեկտիվորեն ինֆորմացիա տալը, միշտ և ամեն ինչում բարձր պահանջկոտություն և ազնվություն դրսևորելը պետք է անշեղ կանոն լինեն կուսակցական աշխատանքում:

Ամենուրեք գործարար, ստեղծագործական ոճի հաստատման պատասխանատու դերը պատկանում է սկզբնական կուսակցական կազմակերպություններին: Կուսակցական կոմիտեները պետք է մշտապես հենվեն նրանց վրա, զարգացնեն ինքնուրույնությունն աշխատանքում, հասնեն այն բանին, որ յուրաքանչյուր կուսակցական կազմակերպությունում ապահովվի անկեղծությամբ, հղացումների ու որոշումների հրապարակայնությամբ, մարդկայնությամբ, կոմունիստների փոխադարձ պահանջկոտությամբ, ընդհանուր գործի նկատմամբ նրանց անդավ հոգատարությամբ բնորոշվող լիարյուն կյանքը: Անհրաժեշտ է էապես ուժեղացնել մինիստրությունների ու գերատեսչությունների կուսակցական կազմակերպությունների ազդեցությունը կառավարման ապարատի, ամբողջությամբ վերցված ճյուղերի գործունեության վրա:

3. Ելնելով այն բանից, որ յուրաքանչյուր կուսակցական կազմակերպության

առողջ, նորմալ կյանքը անհրնակայելի է առանց ներկուսակցական դեմոկրատիայի,
ղեկավարման կոլեկտիվության սկզբունքի խստիվ պահպանման, համագումարը
հրատապ խնդիր է համարում կոլեգիալ մարմինների՝ կուսակցական կոմիտեների
պլենումների, բյուրոների, կուսակցական ժողովների դերի բարձրացումը կշռադատ-
ված, հիմնավորված որոշումների մշակման, դրանց կատարման, ղեկավար կադրերի
գործունեության վերահսկողության իրականացման գործում:

Մեր կյանքում առողջ սկզբունքների հաստատումը, կադրերի մեջ նոր ձևով
աշխատելու ցանկության և ունակության մշակումը կուսակցական կազմակերպու-
թյուններից պահանջում են ըստ ամենայնի զարգացնել քննադատությունն ու ինք-
նաքննադատությունը, ուժեղացնել պայքարը շքամոլության դեմ, ուղղել այն աշխա-
տողներին, որոնք խոսքով հանդես են գալիս վերակառուցման օգտին, սակայն դա-
ռում և գործում են հնացած սխեմաներով, հիվանդագին են ընդունում իրենց հաս-
ցեին արված դիտողությունները: Պետք է վճռականորեն խափանվի քննադատու-
թյան ճնշման, դրա համար հետապնդումների ամեն մի փորձ: Որտեղ խլանում են
քննադատությունն ու ինքնաքննադատությունը, այնտեղ ձևախախտվում է կուսակ-
ցական աշխատանքը, ստեղծվում է ինքնահանգստացման և անպատժելիության
մթնոլորտ, որը տանում է դեպի գործերի լճացում, աշխատողների վերասերում:
Կուսակցության մեջ չպետք է լինեն վերահսկողությունից դուրս մնացած, քննադա-
տության համար փակ կազմակերպություններ: Ոչ մի ղեկավար չպետք է պատսպար-
ված լինի իր գործողությունների և արարքների համար պատասխանատվությունից,
նախ և առաջ՝ սկզբնական կուսակցական կազմակերպության առջև:

4. Առաջադրված խնդիրների հաջող լուծման, մեր ծրագրային նպատակներին
հասնելու գրավականը կուսակցության անընդհատ զարգացումն ու ինքնակատա-
րելագործումն է, նրա շարքերի կուռ համախմբվածությունը, անդուլ պայքարը կու-
սակցականի անաղարտ ու ազնիվ նկարագրի համար: Անցած տարիների ընթաց-
քում է՛լ ավելի է աճել ու ամրապնդվել ՍՄԿԿ-ի ստեղծագործական պոտենցիալը,
ավելի ու ավելի են ամրապնդվում նրա արմատները բանվոր դասակարգի մեջ, հա-
սարակության բոլոր խավերում: Կուսակցության շարքերը համալրվել են թարմ
ուժերով, որոնք պատրաստ են անձնվիրաբար ծառայելու կոմունիստական գործին:
Առավել ևս անհանդուրժելի են նոր համալրում ընտրելիս պահանջկոտության թու-
լացման, կուսակցության մեջ այնպիսի մարդկանց ընդունման դեռևս հանդիպող
փաստերը, որոնք նրա մեջ ընդունվում են կարիերիստական մղումներով, ակնկա-
լելով կյանքի բարիքներ ստանալու ինչ-որ առավելություններ, օրենքի ներողա-
մտություն:

Ոչ մի արտոնություն կուսակցության անդամի համար չկա, կան միայն լրա-
ցուցիչ պարտականություններ: Լենինյան այս միտքը պետք է ելակետային լինի
կուսակցության համալրման և կոմունիստների՝ որպես քաղաքական մարտիկների
ու մասսաների կազմակերպիչների, կուսակցության գլխավոր գծի ու դիրեկտիվների
ակտիվ իրականացնողների, դաստիարակության ուղղությամբ յուրաքանչյուր կուսակ-
ցական կազմակերպության կատարած աշխատանքում: Փոխադարձ բարձր պահանջ-
կոտությամբ, կշռադատված գաղափարադաստիարակչական աշխատանքով, ներ-
կուսակցական կյանքի ամբողջ դրվածքով պետք է ապահովել կուսակցության ան-
դամների անձնական օրինակը, ելնել այն բանից, որ չի լինում կոմունիստի ավան-
գարդային դեր առհասարակ, այն արտահայտվում է կոնկրետ արարքներով, պրակ-
տիկ գործերում, հասարակական պարտքի անբասիր կատարման մեջ:

Կուսակցական կազմակերպությունների կարևորագույն խնդիրն է կոմունիստնե-
րին դաստիարակել բոլշևիզմի մեծ ավանդույթների, ճշմարիտ ընկերականության
ոգով, կուսակցական միջավայրից, մեր ամբողջ կյանքից դուրս մղել շողոքորթու-
տարման համար, կուսակցական կյանքի նորմերի խստիվ պահպանման համար:
տությունն ու ինքնաքննադատությունը պետք է բնական լինեն կոմունիստի համար:
Անհրաժեշտ է բարձրացնել պահանջկոտությունը կոմունիստների, կուսակցական
կազմակերպությունների հանդեպ՝ ծրագրային և կանոնադրական դրույթների կա-
տարման համար, կուսակցական կյանքի նորմաների խստիվ պահպանման համար:
Կուսակցության շարքերը մաքրել բոլոր նրանցից, ովքեր արատավորում են ՍՄԿԿ-ի
անդամի կոչումը:

5. Համագումարը միահամուռ հավանություն է տալիս կուսակցական, պետական,



ռնտեսական աշխատանքի շատ տեղամասեր եռանդուն, պատրաստված կադրերով
ամրապնդելու, իրենց վարկաբեկած կամ ժամանակի պահանջներից ետ մնացած
աշխատողներին փոխելու, մի շարք կազմակերպություններում թույլ տրված կուսակ-
ցական նորմերի խախտումները վճռականորեն հաղթահարելու Կենտրոնական կո-
միտեի ձեռնարկած միջոցներին:

ՍՄԿԿ Կենտկոմը, տեղական կուսակցական մարմինները, բոլոր կուսակցական
կազմակերպությունները պարտավոր են այսուհետև ևս հետևողականորեն ու հաս-
տատակամորեն վարել արդի պահանջներին և կուսակցության առաջադրանքներին
համապատասխանող սկզբունքային կադրային քաղաքականություն: Ոչ մի նահանջ
թույլ չտալ կադրերի ընտրության, տեղաբաշխման և դաստիարակության լենինյան
սկզբունքներից: Ուժեղացնել պայքարը անպատասխանատվության և լիակատար
ներման՝ մի շարք կազմակերպություններում արմատացած իներցիայի, կուսակցա-
կան, պետական կարգապահության, էթիկայի ու բարոյականության խախտումների
փաստերի դեմ: Լուրջ դասեր պետք է քաղել որոշ կուսակցական կազմակերպու-
թյուններում կադրային հարցերը լուծելիս թույլ տրված սխալներից: Կուսակցությունը
չի հաշտվի մեզ համար խորթ պրոտեկցիոնիզմի պրակտիկայի, անձնական նվիր-
վածության ու հայրենակցության հատկանիշներով աշխատողներին առաջ քաշելու
պրակտիկայի հետ:

Կադրերի բոլոր տեղափոխումների ժամանակ վճռական չափանիշները պետք է
լինեն աշխատողների գաղափարաբարոյական հատկանիշները, նրանց ռեալ գործե-
րը, կուսակցության քաղաքական գիծը ակտիվորեն կենսագործելու ընդունակությու-
նը: Յուրաքանչյուր ղեկավարի պետք է հատկանշական լինեն գաղափարական տո-
կունությունը, քաղաքական բարձր կուլտուրան, գործիմացությունը, կոլեկտիվ աշխա-
տանքը կառուցելու, մարդկանց անձնական օրինակով ոգեշնչելու ունակությունը,
սկզբունքներին հավատարմությունը, բարոյական անսասան համոզմունքները, մաս-
սաների հետ շփվելու, մարդկանց շահերով ու կարիքներով ապրելու մշտական պա-
հանջմունքը: Առանձնակի պահանջ պետք է ներկայացվի այն կոմունիստներին,
որոնց վստահված է գլխավորել կուսակցական կազմակերպությունները:

Կուսակցությունն այսուհետև ևս կվարի ղեկավարության մեջ փորձառու և երի-
տասարդ աշխատողների զուգորդելու գիծը, կկատարելագործի կադրերի հետ տար-
վող աշխատանքի կազմակերպումը, առաջքաշման համար հուսալի ռեզերվի նախա-
պատրաստումը, կուսակցական-քաղաքական կրթության սիստեմը, կուժեղացնի
հրապարակայնությունը՝ կադրային հարցերը լուծելիս: Աշխատանքում լճացում թույլ
չտալու, բազմակողմանի փորձով օժտված, նորի, առաջադիմականի նկատմամբ
զգայուն կադրեր ձևավորելու համար նպատակահարմար է կիրառել երկար ժամա-
նակ նույն պոստում գտնված աշխատողներին այլ կազմակերպություններ ու ռե-
գիոններ տեղափոխումը, կադրերի փոխանակություն կատարել կենտրոնի և տեղերի
միջև: Հարկավոր է ավելի ակտիվորեն ղեկավար աշխատանքի առաջ քաշել կանանց:

6. Մեր ընթացքն արագացնելու համար հատկապես հարկավոր է գործարարու-
թյուն, որը դեռևս պակասում է շատ աշխատողների մոտ, որոնք հակված են գործը
փոխարինել շատախոսությամբ, անհիմն հավաստիացումներով ու խոստումներով:
Կուսակցական կազմակերպությունները կոչված են օգնել կադրերին՝ վերակառուց-
վելու գործարար ոգով: Անհրաժեշտ է մշտապես հիշել, որ ասվածի և արվածի միջև
ամեն մի խզում վնաս է հասցնում գլխավորին՝ կուսակցական քաղաքականության
հեղինակությանը և չի կարող հանդուրժվել ոչ մի կերպ: Պետք է վճռականորեն
կռվել բյուրոկրատիզմի դրսևորումների դեմ, որն այսօր լուրջ պատնեշ է տնտեսա-
վարման մեխանիզմի արմատական վերակառուցումը իրականացնելու ճանապարհին,
ամեն մի կենսունակ գործի հակառակորդ:

Կուսակցական կոմիտեները պարտավոր են ուշադրությունն ու ջանքերը սևեռել
մեր զարգացման, կյանքի բոլոր ոլորտներում նորի, առաջավորի արմատավորման,
կազմակերպվածության հետագա բարձրացման հիմնական, հանգուցային հարցերին:
Ընդ որում, չպետք է թույլ տրվեն կուսակցական և այլ մարմինների պարտակա-
նությունների շփոթում, պետական և տնտեսական կազմակերպությունների փոխա-
րինում և մանր խնամակալություն: Կարևոր է աշխատանքն այնպես կառուցել, որ
յուրաքանչյուր ոք հանձնարարված տեղամասում լավ կատարի իր գործը, գործի

12. Անհրաժեշտ է կատարելագործել գաղափարախոսական աշխատանքի կազմակերպումը, ապահովել բոլոր ղեկավար կադրերի մասնակցությունը այդ աշխատանքին, կոմպլեքսային մոտեցումը դաստիարակության գործի նկատմամբ, ամբողջ աշխատանքի կենտրոնում դնել կոնկրետ մարդուն: Դաստիարակության միասնության հասնել արտադրության, ուսման մեջ և մարդկանց բնակության վայրում:

Նոր մարդու դաստիարակության համակուսակցական գործի մեջ գաղափարախոսական աշխատողների, ակտիվի ավանդը պետք է աճի: Կուսակցությունը այսուհետև էլ կբարձրացնի այն գաղափարախոսական կադրերի հեղինակությունը, ովքեր անձնական օրինակով ապացուցում են իրենց համոզմունքները, կարողանում են մտածել վերլուծողաբար, ունեն տեսության ճաշակ, լայն էրուդիցիա, պրոֆեսիոնալ պատրաստություն, ընդունակ են հաջողությամբ լուծելու նոր ժամանակի խնդիրները:

* * *

ՍՄԿԿ XXVII համագումարը, լենինաբար ընդունելով կոմունիզմի իդեալների, խաղաղության ու առաջադիմության իդեալների հաղթանակի համար մղվող պայքարի համարձակ ու ռեալիստական, մոբիլիզացնող ու ոգեշնչող ստրատեգիա, կուսակցության անհողդողդ վճռականությունն է հայտնում ընթանալու մեր մեծ ուղիով, բացելու բանվոր դասակարգի, կոլտնտեսային գյուղացիության, ժողովրդական մտավորականության ստեղծագործ եռանդի և հեղափոխական նախաձեռնության նոր ասպարեզ:

Սովետների երկրի կոմունիստները այսուհետև էլ կգտնվեն ստեղծարար աշխատանքի առաջավոր գծում, ցույց կտան անձնվիրության օրինակ, ժողովրդի հանդեպ իրենց պարտքի անշեղ կատարման, գալիք սերունդների հանդեպ բարձր պատասխանատվության օրինակ:

Համագումարը սովետական մարդկանց կոչ է անում բոլոր ուժերը, գիտելիքները, ընդունակությունները, ստեղծագործական խանդավառությունը նվիրաբերել կոմունիստական արարման մեծ նպատակներին, ըստ արժանվույն շարունակել Լենինի հաղթական հեղափոխական գործը, Հոկտեմբերի գործը:

---

# ԻՆՖՈՐՄԱՑԻՈՆ ՀԱՂՈՐԴԱԳՐՈՒԹՅՈՒՆ

## ՀԱՅԱՍՏԱՆԻ ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ԿՈՒՍԱԿՑՈՒԹՅԱՆ ԿԵՆՏՐՈՆԱԿԱՆ ԿՈՄԻՏԵԻ ՊԼԵՆՈՒՄԻ ՄԱՍԻՆ

1986 թվականի ապրիլի 5-ին տեղի ունեցավ Հայաստանի կոմունիստական կուսակցության Կենտրոնական կոմիտեի պլենումը:

Պլենումը քննարկեց «ՍՄԿԿ XXVII համագումարի արդյունքները և համագումարի որոշումների կատարման ուղղությամբ հանրապետական կուսակցական կազմակերպության խնդիրները» հարցը:

Զեկուցումով հանդես եկավ Հայաստանի կոմունիստական կուսակցության Կենտրոնական կոմիտեի առաջին քարտուղար ընկ. Կ. Ս. Դեմիրճյանը:

Զեկուցման շուրջը ծավալված մտքերի փոխանակությանը մասնակցեցին ՀԿԿ Երևանի քաղկոմի առաջին քարտուղար ընկ. Լ. Գ. Սահակյանը, Երևանի ավտոդողերի գործարանի բանվոր ընկ. Ս. Խ. Տոնոյանը, ՀԿԿ Լենինականի քաղկոմի առաջին քարտուղար ընկ. Դ. Ա. Հարությունյանը, Աշտարակի շրջանի Սասունիկի սովխոզի դաշտավար ընկ. Ս. Խ. Գևորգյանը, ՀԿԿ Կիրովականի քաղկոմի առաջին քարտուղար ընկ. Հ. Ա. Օհանյանը, Երևանի պետական համալսարանի ռեկտոր ընկ. Ս. Ա. Համբարձումյանը, Հայկական ՍՍՀ ներքին գործերի մինիստր ընկ. Հ. Ս. Շահինյանը, «Ռյա թազա» թերթի խմբագիր ընկ. Մ. Ա. Մստոյանը, «Երևանշին» արտադրական շինմոնտաժային միավորման կոմպլեքսային բրիգադի բրիգադավար ընկ. Հ. Հ. Աբրահամյանը, ՀԱՄԽ-ի նախագահ ընկ. Մ. Կ. Հարությունյանը, Երևանի № 35 միջնակարգ դպրոցի ուսմասվար ընկ. Ռ. Պ. Օլեյնիկովան, ՀԿԿ Սիսիանի շրջկոմի առաջին քարտուղար ընկ. Շ. Բ. Դավթյանը, Հայկական ՍՍՀ կուլտուրայի մինիստր ընկ. Յու. Ա. Մելիք-Օհանջանյանը, ժողովրդական դեպուտատների Վարդենիսի շրջսովետի գործկոմի նախագահ ընկ. Մ. Հ. Իմամալիևը, «Լույս» արտադրական միավորման կուսկոմիտեի քարտուղար ընկ. Վ. Հ. Դաշյանը:

Պլենումում եզրափակման խոսքով հանդես եկավ Հայաստանի կոմունիստական կուսակցության Կենտրոնական կոմիտեի առաջին քարտուղար ընկ. Կ. Ս. Դեմիրճյանը:

Քննարկված հարցի առթիվ Կենտկոմի պլենումն ընդունեց համապատասխան որոշում:

Դրանով Կենտկոմի պլենումն ավարտեց աշխատանքը:

Հայաստանի կոմկուսի Կենտկոմի պլենումի աշխատանքին մասնակցում էր ՍՄԿԿ Կենտկոմի կազմակերպական-կուսակցական աշխատանքի բաժնի հրահանգիչ ընկ. Վ. Ի. Պոլյակովը:

---

## ԼՈՒՅՍ Է ԸՆԾԱՅԵԼ «ՀԱՅԱՍՏԱՆ» ՀՐԱՏԱՐԱԿՉՈՒԹՅՈՒՆԸ

**Մ. Ս. Գորբաչով**— ՍՄԿԿ Կենտրոնական կոմիտեի Քաղաքական զեկուցումը Սովետական Միության կոմունիստական կուսակցության XXVII համագումարին:

**Ն. Ի. Ռիժկով**— ՍՍՀՄ տնտեսական ու սոցիալական զարգացման 1986—1990 թվականների և մինչև 2000 թվականն ընկած ժամանակաշրջանի հիմնական ուղղությունների մասին:

Սովետական Միության կոմունիստական կուսակցության ծրագիրը: Նոր խմբագրություն:

Սովետական Միության կոմունիստական կուսակցության կանոնադրությունը:

ՍՍՀՄ տնտեսական ու սոցիալական զարգացման 1986—1990 թվականների և մինչև 2000 թվականն ընկած ժամանակաշրջանի հիմնական ուղղությունները:

Սովետական Միության կոմունիստական կուսակցության XXVII համագումարի բանաձևը ՍՄԿԿ Կենտրոնական կոմիտեի Քաղաքական զեկուցման առթիվ:

**Կ. Ս. Դեմիրճյան**— ՀԿԿ Կենտկոմի հաշվետվությունը Հայաստանի կոմկուսի XXVIII համագումարին:

---

*Հանձնված է շարվածքի՝ 15.03.86 թ.: Ստորագրված է տպագրության՝ 14.04.86 թ.: ՎՖ 05442:
Ֆորմատ՝ 70×108¹/₁₆: Տպագրությունը՝ բարձր, 8,4 պայմանական տպ. մամ., 9,4 հրատ. մամ.:
Տպաքանակը՝ 18.232: Պատվեր՝ 625:*

---

*ՀԿԿ Կենտկոմի հրատարակչության տպարան, Երևան—23, Օրջոնիկիձեի պողոտա № 2:*